

# ԸՆԿԱՎ ԾԱՌԻՑ ՏԵՐԵՎԸ ՑԱԾ

*ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ*

Ընկավ ծառից տերևը ցած,
Ջրին ասավ՝ աշունն եմ ես,
Սեզը՝ քամու բերանն ընկած,
Լեռին ասավ՝ աշունն եմ ես:

Սառը քամին այգու ճամփով
Սահեց, ասավ՝ աշունն եմ ես,
Պաղ լուսինը երեսն ամպով
Ծածկեց, ասավ՝ աշունն եմ ես:

Առուն բարակ, տխուր ձայնով,
Երգեց, ասավ՝ աշունն եմ ես,
Վազը խոնարհ, հարսի նազով,
Բերքով ասավ՝ աշունն եմ ես:

Ամպը լեռան ստորոտում
Մաղվեց, ասավ՝ աշունն եմ ես,
Կռունկների երամն օդում
Ճաղվեց, ասավ՝ աշունն եմ ես:

# ԱՇՈՒ՜Ն

*ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

Այգին, աշնա՜ն այգին,
Տաք գույներով, բույրով,
Գիրկն է կանչում կրկին
Հազար հրապույրով:

Կաթ-կաթ՝ տանձն է կաթում,
Շեկ այտերին՝ ցողիկ,
Ընկույզներն են՝ տո՛ւկ, տո՛ւկ,
Ընկնում խոնավ հողին:



Փշատն է ծի՜կ անում,
Ալրոտ են աչք և ունք,
Ծաղն է նստել դեղձի
Դեմքին՝ հուլո՜ւնք-հուլո՜ւնք:

Տերևների քողով
Նուռն է դեմքը փակում
Ու կանչում է՝ քաղվո՜ր,
Հասի՜ր, սիրտս է ճաքում:

Իսկ այգեպան քեռին
Քայլում է գոհ ու լուռ,
Խնդություն է համակ
Նրա սիրտը մի բուռ:

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՋԱՆԳԱԿ ԱՂԲՅՈՒՐԸ

*ՄԱՆՈՒԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Դավիթը, չափիչ ձողը ձեռքին բռնած, կանգնած էր բլրի վրա: Քամին այդտեղ ավելի ուժեղ էր և ցրում խառնում էր Դավթի մազերը: Քիչ ներքև՝ առատ անձրևներից թարմացած խոտն ալիք էր տալիս ու խոտերի մեջ ալիքվում էր ոչխարի հոտը: Երկրաբան Ռուբենը, որ կռացել էր եռոտանուն ամրացված չափիչ գործիքին, ուղղվեց, ինչ-որ բան գրեց տետրի մեջ ու ձեռքով նշան արեց Դավթին: Մինչ տղան կմոտենար, ոչխարների մոտից, մահակը թիկունքին դիմահարած՝ առաջ եկավ տարեց հովիվը, կասկածանքով նայեց երկրաբանի գործիքին և անշտապ բարևեց:

— Բարև՛,— ասաց Ռուբենը, սպասեց, որ հովիվն էլի բան ասի, բայց հովիվը ոչինչ չասաց: Նա խաղաղ, հանգիստ պտտում էր հայացքն ու երբեմն-երբեմն կրկին նայում չափիչ գործիքին: Հովվի շունը, երևի, չցանկացավ տիրոջը մենակ թողնել, վազեց, մոտ եկավ, փռվեց նրա ոտքերի մոտ, լեզուն կախ գցեց և անշարժացավ:

— Ջուր ենք փնտրում,— ասաց Ռուբենը ու նրան թվաց, թե հովիվը չլսեց:

Դավիթը վերից-վար թվերով նախշված ձողը ցած դրեց, նորից ուղղեց քամուց խառնված մազերը:

— Վարդանի տղան չե՞ս,— ասաց հովիվը Դավթին:

— Վարդանի տղան եմ:

— Կարդալդ պրծա՞ր...

— Չէ: Փոխվեցի ութերորդ:

— Արձակուրդներ է,— ասաց Ռուբենը,— ինձ օգնում է, հետն էլ փող է աշխատում:

— Չէ՛,— հոգոց հանելով մի տեսակ դժգոհ ասաց հովիվը,— էս կողմերում ջուր չկա:

Ռուբենը ծխախոտ հանեց, պարզեց հովվին, հովիվը գլուխն օրորելով հրաժարվեց:

— Էս բլրի տեղում աղբյուր է եղել,— ծուխը փչելով, ասաց Ռուբենը,— դարեր շարունակ նա բխել է ու իր հետ դուրս բերել ընդերքում եղած աղերը, ապառները, տարածել իր շուրջը ու նրանց հետ ինքն էլ աստիճանաբար վեր է բարձրացել, գոյացրել այս բլուրը: Հետո աղբյուրի ուժն այլևս չի հերիքել, ճնշումը քիչ է եղել ու ինքը թաղվել է իր սարքած բլուրում, փակվել, անհետացել է:

— Ո՞ւր է անհետացել,— զարմացավ Դավիթը:

— Ուրիշ ճանապարհ է գտել: Հիմա ո՞վ գիտե, ո՞ր քարի տակից են դուրս գալիս նրա ջրերը:

— Չէ՛,— դեմքը խոժոռելով, գլուխն օրորեց հովիվը,— սրա պատմությունն ուրիշ է:— Նա ձեռնափայտին հենվելով՝ նստեց, պարզեց ոտքերը.— Թե ուզում եք, նստե՛ք, ես ձեզ կպատմեմ, թե ոնց է եղել:

Մինչ Ռուբենն ու Դավիթը կնստեին, հովիվը հայացքը գցեց բլրի լանջն ի վեր սահող ոչխարների կողմը, համոզվեց, որ ամեն ինչ կարգին է ու սկսեց.

— Էս աղբյուրի անունը Զանգակ աղբյուր է եղել: Ջուրը արտասուքի պես զուլալ, սառն է եղել ու շա՜տ, մի գետի չափ: Էս տեղերում,— հովիվը պարզեց մահակը ու օդի մեջ աղեղ գծեց,— շեներ են եղել, մարդիկ են ապրել ու նրանք աշխարհիս երեսին ամենից երկար ապրողներն են եղել, որովհետև Զանգակ աղբյուրի ջուրը անմահական էր: Որտեղով անցել է նրա ջուրը՝ բարիք է տվել, ու էդ բարիք վայելողը ամեն ցավից, հիվանդությունից հեռու է եղել:

Հետո Զանգակ աղբյուրի լուրը բերնե-բերան գնացել, հասել է օտարերկրյա զավթիչներին: Նրանք հրով ու սրով եկել են, կրակի են տվել շեները, մարդկանց մորթել ու նրանց արյունից յոթ օր ու յոթ գիշեր կաս-կարմիր են եղել Զանգակ աղբյուրի ջրերը:

— Էս ի՞նչ եք անում, ա՜յ անաստվածներ,— լեզու առած ձեն է տվել Զանգակ աղբյուրը, բայց ավազակներին խոսք կհասկացնե՞ս... Էն ժամանակ գազազել է Զանգակ աղբյուրն ու գոռացել աշխարհով մեկ.

— Ես էս երկրի ջուրն եմ, իմ բարիքն էս երկրի մարդկանց համար էր: Դուք եկաք կոտորեցիք նրանց, որ տիրանաք իմ բարիքներին: Բայց իմացեք՝ արյուն բերողը արյան մեջ էլ կխեղդվի...— Էսպես գոռացել, փրփրել է, իր միջից քար ու հեղեղ է ժայթքել, քշել, տակով է արել ավազակներին ու նրա ժայթքած քար ու հեղեղից մի օրում գոյացել է էս բլուրը...

Հովիվը լռեց: Մոտ եկած ու քարին անշարժ կանգնած այծը վար ցատկեց, և նրա վզից կախ տված զանգը ծլինգ-ծլինգ՝ ծլնգաց:

— Բա հետո աղբյուրն ի՞նչ եղավ, Սահա՛կ քեռի,— լռությունը խզեց Դավիթը:

— Ի՞նչ եղավ...— վրդովված ասաց հովիվը:— Տեսավ, որ երկրի մարդիկ կոտորվել, մարդ չի մնացել, ասաց՝ էլ ո՞ւմ համար ապրեմ... խռովեց աշխարհից ու ինքն իրեն խեղդեց: Իմ պապ Հարութը լսել է, թե ոնց էր խռխռալով խեղդվում Զանգակ աղբյուրը: Ա՛յ էնտեղ ճաք կար՝ փակվել, կորել է,— նա պարզեց մահակը,— ճեղքի միջից էր գալիս խըռխըռոցը...

Ոչ ոք չէր խոսում: Սևամորթ գամփռը բացեց երախը, ալարելով հորանջեց, հետո թափ տվեց գլուխը, փախցրեց աչքերի շուրջը հավաքված ճանճերին: Հովիվը ոտքի ելավ, բարձրացրեց մահակը, թիկունքին հենեց ու տխրաձայն ասաց Ռուբենին.

— Էսպես է եղել...

— Հա՜...— սթափվեց Ռուբենը,— երևի քո պատմածը ամենից ճիշտն է:

Հովիվը փափուկ քայլերով դանդաղ հեռացավ: Շունն ելավ, գնաց տիրոջ ետևից: Քամին նորից բերում էր զանգի ծլնգոցը:

Նկ. ԼԵՎՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ




## ՈՒՍՈՒՑԻՉ

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՕՀԱՆՅԱՆ

Մեր սիրելի՛ ուսուցչուհի,
Դու հոգատր ծնողն ես մեր,
Մենք քեզանով սովորեցինք
Մեր մեսրոպյան գիրը սիրել:
Սիրել հայկյան քաղցր լեզուն,
Մեր դաշտերն ու գետերն անհաման,
Սիրել երկինքը երազուն,
Հորիզոնները ազատաբաղձ:
Այդ քեզանով մենք սիրեցինք
Եղբայրության դաշինքը մեծ,
Որ մեր հողում հնամենի՝
Մեզ արեգակ ու հաց տվեց:

Իմաստության ակունքն ես մեր,
Այնպե՜ս վարար, խորունկ ու ջինջ,
Մեր սիրելի, մեր անմահ,
Մեր սրբություն, մեր ուսուցի՛չ:

# ԻՍԿԱՊԵՍ ՈՐ ՁԱԽՈՐԴ ՓԱՆՈՍ

ՀՈՎՀ. ՂՈՒԿԱՍՅԱՆ



Իմ ձախորդություններին վերջ չկա... Այն օրը, որ դասերս հինգի սովորած լինեմ՝ դաս չեն հարցնի, իսկ երբ, բան է, մի քիչ կաղամ՝ «Բարսեղյան, ապա մի գրատախտակի մոտ»... Իհարկե, միշտ այսպես չի լինում. հաճախ հիանալի եմ պատասխանում, բայց, մեծ մասամբ, այդ օրերի ուրախությունս, ինչպես ասում են, եթե ոչ դպրոցում, ապա տանն է քթից դուրս գալիս: Ինչո՞ւ հեռու գնանք. սրանից մի երկու շաբաթ առաջ տնեցիք ուղարկեցին ինձ «Երեք հրացանակիրներ»... Այդտեղ պատահածը դեռ ոչինչ:

Այն, ինչ պատահեց անցյալ կիրակի՝ հունվարի 7-ին, արտակարգ բան էր, և կարծես արտակարգ այն պատճառով, որ տանը արտակարգ հյուր ունեինք...

Ֆեոդոր Իվանովիչին, որ ապրում է Մուրմանսկում և պահածոների պատրաստման ցեխի բրիգադիր է «Երմակ» ձկնորսական նավի վրա, մենք վաղուց էինք սպասում: Նա հայրիկիս մարտական ընկերն է եղել, միասին են կռվել Մերձբալթյան ճակատում և, հետո, իրար կորցրել: Լավ հիշում եմ, ես առաջին դասարանում էի, ուղիղ չորս տարի առաջ հայրիկս մի նամակ ստացավ Մուրմանսկից և կարդում էր արցունքն աչքերին: Դա Ֆեոդոր Իվանովիչից էր, որ

թերթում պատահաբար հանդիպելով հորս անվանը (հայրիկս դասախոս է պետհամալսարանի երկրաբանական ֆակուլտետում), մի հուզիչ նամակ էր գրել՝ երազելով այն օրը, երբ իրեն բախտ կվիճակվի Երեվանում հանդիպելու «дорогому Саше», այսինքն՝ հայրիկիս:

Եվ ահա, չորս տարվա նամակագրությունից հետո, չորս օր առաջ, իրիկնապահին, երբ զանգի վրա դուռը բացեցի, տեսնեմ բարձրահասակ, սամույրե գլխարկով ու մորթյա կիսավերարկուով մեկը հայրիկիս է հարցնում: Սկզբում ինձ թվաց «Դինամոյի» դարպասապահ Յաշինն է՝ այնքան նման էր նրան, իսկ երբ գլխարկը հանելով ներս մտավ ու հայրիկիս տեսնելով փաթաթվեց ու երկուսն էլ արցունք թափելով սկսեցին պաչպչվել, նոր իմացանք, որ Ֆեոդոր Իվանովիչն է:

Է՜, ինչ ասեմ, Նոր տարի, սեղանը էն գլխից բաց, ու այսպիսի հյուր: Կերան, խմեցին, հիշեցին իրենց զոհված ընկերներին, լաց եղան, «Կատյուշան» երգեցին, «Մարտիկի երգը» երգեցին, հետո էլի ուրախացան, և երբ հերթը հասավ Սևանում ապրող իրենց հին ընկերներից մեկի՝ քեռի Արտյոմի կենացին, Ֆեոդոր Իվանովիչը, թե՝

— Ах, как хотелось бы увидаться с ним!

Հայրիկս ասաց.

— Չմտածես, Ֆեո՜դոր ջան, գալ շաբաթ անպայման կգնանք, Սևանն էլ կտեսնես, Արտյոմին էլ:

Բայց այստեղ Ֆեոդոր Իվանովիչն ասաց, որ ինքը ընդամենը երեք օրով է եկել, որ իր արձակուրդից համարյա թե բան չի մնացել, որովհետև նախքան մեզ մոտ գալը՝ երկու շաբաթ էլ հյուր է եղել Մոսկվայում ապրող իր գնդապետ որդու տանը:

Ասաց ու բոլորիս սիրտը կոտրեց: Ախր շատ հիանալի մարդ էր Ֆեոդոր Իվանովիչը՝ ասող-խոսող, սրտաբաց: Տատիկս անընդհատ ասում էր. «Իսկը մեր Սողոմոնն ա, նա էլ էր էդպես»: Ո՞վ է եղել այդ Սողոմոնը՝ չգիտեմ, բայց Ֆեոդոր Իվանովիչը սքանչելի մարդ էր: Ո՜նց էր քրքջու՝ Հասմիկի հետ տոնածառի շուրջը պարում: Մայրիկիս հետ էլ պարեց, իսկ տատիկս սկզբում թեև «Ի՜հ, ի՜» ասելով՝ չէմուչում էր անում, մի այնպիսի՜ «Ուզունդարա» պարեց, որ զարմել-մնացել էինք: Ես, իհարկե, չպարեցի (պարե՜լս էր պակաս...) բայց, որ ասեմ Ֆեոդոր Իվանովիչը ինձ բոլորից շատ սիրեց՝ չեք հավատա: Մի գլուխ գլուխս էր շոյում ու.

— Хорр-ош мальчик, прямо прелесть, хорр-ош мальчик!

Ա՜յ թե «хорр-ош»-ություն ցույց տվի.. Եվ դեռ ափսոսում էր, որ իր Վասյային իր հետ չէր բերել, որ ընկերներ դառնայինք...

Է՜հ, ի՜նչ ասեմ, երբ բոլորս էլ համոզվեցինք, որ իսկապես, Ֆեոդոր Իվանովիչը երեք օրից ավելի չի կարող մնալ, հայրիկս գնաց կողքի սենյակը հեռախոսով Սևանի հետ կապվելու: Այդ եղավ: Հետո զանգահարեց քեռու՝ Վաղոյին ու խնդրեց, որ առավոտյան գա իր «Զիմով» մեզ Սևան տանի: Այդ էլ եղավ: Եվ թեև հայրիկս ասում էր, որ քեռի Վաղոյի վրա այնքան էլ չի կարելի հույս դնել, բայց վաղ առավոտյան, երբ դրսից մեքենայի ձայնը լսեցինք, ասաց.

— Եղա՛վ:

Նստեցինք մեքենա: Ֆեոդոր Իվանովիչը Հասմիկին ծնկների վրա առնելով՝ նստեց քեռի Վաղոյի կողքին և, որպեսզի իրեն հանգիստ զգար, ուսից կախված լուսանկարչական ապարատը տվեց ինձ (երանի՜ թե չտար...) .

Կաթնագույն լուսաբաց էր, քաղաքի փողոցները ծածկված էին ձյունով, ո՜չ մի ոտնահետք, ո՜չ մի անցորդ, ասես լուսնի քաղաք լինեն:

Մեքենան թռչում էր նոր ու լայն ճանապարհով, դաշտերի վրայից թափանցիկ, ծիածանագույն քողեր էին անցնում և բլուրների վրա ասես շաքարավազ էին ցանել... -

— Молодец Варо, красота! Прямо прелесть,— մերթ ընդ մերթ բացականչում էր ոգևորված Ֆեոդոր Իվանովիչը, կարծես բնության այդ գեղեցկությունները Վաղո քեռին էր ստեղծել:

— Դե սա ինչ է ո՜ր, ետևից ասում էր հայրիկս,— բա որ ամռա՜նը գաս, որ Լոռին ու Զանգեզո՜ւրը տեսնես...

— Բա Ծաղկաձո՜րը.— խառնվեցի ես:

Այս որ չասացի, հայրիկս, թե՝

— Իդե՜ա... Ֆեո՜դոր ջան, ճամփի վրա է, վատ չէր լինի, որ Ծաղկաձորն էլ տեսնես, այնտեղ է Սովետական Միության սպորտային գլխավոր բազան:

— Поехали!— բացականչեց Ֆեոդոր Իվանովիչը:

Թեքվեցինք Ծաղկաձոր: Ծաղկաձոր, ի՜նչ Ծաղկաձոր. մի գլուխ դահուկ ու սահնակ. ասես Նոր տարի չլինեն, այլ՝ դահուկավազքի մրցումների տասնօրյակ: Կանգնեցինք Օրբելու փողոցի վրա գտնվող սրճարանի առջև: Ես, ճիշտն ասած, տնից դուրս գալուց առաջ երեք կտոր տորթ էի կերել՝ ախորժակ չունեի: Ուստի, հայրիկիս ասացի, որ մինչև իրենք նախաճաշեն, ես մի քիչ ման կգամ, որից հետո պետք է սպորտային գլխավոր բազան դիտեինք ու Սևան գնայինք: Ոչ բարով ման գալու գնայի, և ոչ բարով այդ ուղղությամբ գնայի: Գնացի, գնացի ու դուրս եկա ուղիղ վանքերի տակ: Տեսնեմ շատերը՝ որը դահուկով, որը հենց այնպես, դեպի ձորն են իջնում, իսկ ձորում, տեսնեմ մի աշտարակ: Հա՜, ասացի, ուրեմն սա՛ է ճոպանուղի ասածը, որ ուղիղ տանում է Թեղենիսի գագաթը: Չփորձե՞մ: Ասելս ու անելս մեկ եկավ: Տոմս կտրեցի ու մի մեծագլուխ գնդիկ տղայի հետ նստեցինք վագոնիկ: Նստեցի, բայց սիրտս ինչ-որ վատ բան էր վկայում: Մտածեցի՝ երևի վախից է: Բայց հետո ասացի՝ ի՜նչ է, այս տղայի չափ էլ չկա՞մ, կգնամ ու



*Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՍԱՄՎԵԼՅԱՆԻ*

կդառնամ, և գնալ-գալս էլ տասնհինգ րոպեից ավել չի տևի։ Բայց ո՛չ… կարծեմ փոշմանեցի և ուզում էի իջնել, երբ, հանկարծ, վագոնիկը, վը՜զզ, մեզ առավ ու տարավ ձորի վրայով…

Նայում եմ ցած՝ ահռելի ձորն է, նայում եմ աջ ու ձախ՝ սև անտառն է, տոնածառի պես վրան բամբակի մալաչներ շաղ տված, դիմացս էլ նստած է այդ գնդիկ-բոքոնիկը, ատամները բաց արած ժպտում է, ու աչքերը պսպղում են մկան աչքերի պես։

— Հը՞, վախենո՞ւմ ես,— հարցրեց ինձ։

— Դու ես վախենում,— ասացի ես, և թեև վախենում էի՝ սկսեցի ժպտալ։

— Ե՞ս վախենամ,— քմծիծաղ տվեց նա,— ես հրացան էլ եմ կրակել, ես Ծաղկաձորի Համբարձումն եմ։

— Ա՜յ թե մեծություն,— ասացի ես,— Ծաղկաձորի Համբարձո՞ւմ. ասես շատ մի հայտնի մարդ լինես։

— Բա հայտնի չեմ, ի՞նչ եմ. գրող Ղուկասյանն է գրել իմ մասին,— ասաց նա պարծենալով։— «Ծիծեռնակի» մեջ էլ տպել են։ Հենց նրա հրացանն եմ կրակել։ Դե, դու երևի չես էլ կարդում։

— Ես ոչ միայն կարդում եմ,— ասացի ես,— այլև գրում էլ եմ. իսկ Ղուկասյանը մեր հարևանն է։

— Բո՜ բո՜ բո՜ բո՜-բո՜,— շրթունքներն ուռցնելով ծաղրեց նա,— գրո՞ւմ ես, չէ՞-մի…

— Այո՛,— ասացի,— իսկի էլ «բո-բո-բո» մի՛ անի, ես ինքս էլ եմ գրում, և մայրիկս շատ է ուզում իմ գրածները ցույց տալ նրան, ես չեմ թողնում։

Այս որ չասացի, այդ Համբարձում կոչեցյալը մի այնպիսի ծիծաղ սկսեց, որ քիչ մնաց վագոնիկից դուրս գար։ Բայց ո՞նց դուրս գար… ստիպված ես էլ սկսեցի նրա ծիծաղի հանգը վերցնել.

— Խի՜, խի՜, խի՜, խի՜, խի՜…

Բայց հենց այդ պահին ասես վագոնիկն էլ սկսեց «խի՜, խի՜, խի՜» անել, ապա բկում բան մնացածի պես խզզալ ու, վերջն էլ՝ խը՛ըթ, կտրվեց։

— Այս ի՞նչ պատահեց,— շունչս հազիվ տեղը բերելով՝ հարցրեցի ես։

— Էնտեղից է… փչացավ,— ասաց այդ Համբարձումը՝ գլխով Ծաղկաձորի կողմը ցույց տալով.— երբեմն պատահում է։

Ուղիղ հինգ ու կես ժամ կախված մնացինք, մինչև որ մեզ ետ քաշեցին մեր փրկարար ափը… Ուղղակի Պուշկինի ջրահեղձի օրն էինք ընկել, էլ չեմ ասում մերոնց մասին։ Ինձ փնտրելով, ողջ Ծաղկաձորը ոտքի տակ տալով, վերջը եկել հասել էին աշտարակի մոտ ու իմացել, որ երկու հոգի մնացել են խանգարված վագոնիկում։ Բայց դեռ ի՞նչ իմանային, որ մեկը ես եմ։ Գործը մայրիկիս վալերիանի կաթիլներ խմեցնելուն և հեռադիտակի էր հասել։ Նայել էին. տեսել՝ ինչ-որ մի սև կետ է օրորվում անտառի գլխին, դե, գնա, իմացիր՝ ագռավի բո՞ւյն է, թե՞ վագոնիկ…

Էլ ի՞նչ Սևան. արդեն երեկո էր։ Ամոթից գլուխս կախ քարշ էի գալիս մերոնց ետևից։ Սիրտս քրքրվում էր Ֆեոդոր Իվանովիչին նայելիս, իսկ նա, քաղաքավարությունից դրդված, անընդհատ ժպտում էր, և երբ հայրիկս մի քանի ծանր խոսք ասաց ինձ՝ նա նույնիսկ պաշտպանեց.

— Ну, ну, не надо обижать мальчика,— ասաց նա գլուխս շոյելով։— Всё таки это героизм.

Ա՜յ թե «հերոսություն» էր… Բայց, այնուամենայնիվ, դրանից հետո նա էլ ո՛չ «хорр-ош» ասաց, ո՛չ էլ Վասյայի անունը տվեց…

Մի խոսքով՝ պատրաստվում էինք տուն վերադառնալու, երբ Ֆեոդոր Իվանովիչը առաջարկեց հիշատակի համար լուսանկարվել։ Ա՜յ թե «հիշատակվելու» օր էր։ Պատյանից հանեց ապարատը, կանգնեցինք, որ նկարի, մեկ էլ թե՝

— Чёрт возьми, касету наоборот положили!

Ասաց, չոքեց ու կիսավերարկուի փեշի տակ ինչ-որ բան էր ուղղում ապարատում: Հետո հա՜ նկարվեցինք. է՛լ քեռի Վաղոյի «Զիմի» առջև, է՛լ անտառի ֆոնի վրա, դահուկավորների հետ, վանքերի մոտ, ու՝ երբ եղանք սպորտբազայում, աշխարհի չեմպիոն, ծանրորդ Վասիլի Ալեքսեևի հետ էլ նկարվեցինք: Նկարվեցինք, բայց ի՞նչ… հետևյալ օրը, երբ քեռի Վաղոն եկավ Ֆեոդոր Իվանովիչին օդանավակայան տանելու ու իրենց տանը երևակած կասետը տխուր-տխուր գցեց սեղանի վրա, բոլորիս թվաց, թե ինչպես միշտ, երևի նորից երթևեկության կանոններն է խախտել և վարորդական իրավունքի կտրոնը ծակել են: Քեռի Վաղոն դեռ բերանը չէր բացել, Ֆեոդոր Իվանովիչը, կասետը լույսին բռնելով, տխուր-տխուր ասաց.

— Чёрт возьми, прямо не везет!

Սևացած կասետի վրա ոչինչ չէր երևում… Այդպես էլ ապարատի «թարսվածությունը» Ֆեոդոր Իվանովիչի և քեռի Վաղոյի համար մնաց մութ ու անբացատրելի: Ես միայն հասկացա, թե բանն ինչումն է, ես, որ մինչև երեկ ոչինչ չէի հասկանում ապարատից, իսկ երեկ մեր դասարանցի ֆոտոսիրող Գարուշը սկսեց ինձ բացատրել նկարելու գաղտնիքները: Ծընկներս թուլացան: Հիշեցի, թե ինչպես մեքենայում, ճանապարհի գեղեցկությամբ ոգևորված, Ֆեոդոր Իվանովիչը չխկացնում էր ու բացականչում.

— Красота,.прямо прелесть!

Իսկ հիմա տարակուսած բացականչում էր. «чёрт возьми», և հիշեցի հայրիկիս «մաքուր Փանոս ենք մեծացնում» խոսքը, որ նա ասաց, երբ ես ցրտից կապտած դուրս էի գալիս վագոնիկից…

Իսկապես որ «чёрт возьми», իսկապես որ Ձախորդ Փանոս… Ես հիմա մի բանից եմ վախենում. վա՜յ թե այս բոլորը մեր դասարանցիների ականջն ընկնի ու անունս Ձախորդ Փանոս դնեն…



## ԼՈՒՍԱԲԱՑ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Եթե ուզում եք իմանալ հանկարծ՝
Սկյուռն ինչպես է աչքերը բանում,
Անտառ գնացեք լույսը չբացված,
Արևի շողն է նա փառաբանում:

Եթե ուզում եք իմանալ հանկարծ՝
Արտույտն ինչպես է երկինք սլանում,
Դուք արտ գնացեք լույսը չբացված,
Լույսի շողերն է նա փառաբանում:

Եթե ուզում եք իմանալ հանկարծ՝
Կոկոնն ինչպես է թերթերը բանում,
Ծաղկանոց մտեք լույսը չբացված,
Արևի շողն է նա փառաբանում:

## ԴԵՂՁԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Դե՛ղձ, ինչո՞ւ ես
Անխր այդպես.
Դուրսդ՝ փափուկ,
Համդ՝ քաղցր,
Իսկ կորիզդ՝
Դառն ու կարծր:
— Մի՞թե վատ է,
Ա՛յ Վարդերես,
Որ ես անվերջ
Քաղցրությունը
Ձեզ եմ տալիս,
Դառնությունը՝
Պահում իմ մեջ:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

# ՊԱՏՐԻԿԸ ԵՎ ՆՐԱ ՀԱՅՐԸ ԱՐԱՄԸ

ԳՐԻԳՈՐ ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

— Հայրի՛կ,— ասաց Պատրիկը.— այսօր բան եմ մտածել:

Արամը ուշադիր նայեց որդու աչքերին:

— Ի՞նչ ես մտածել, Պատրի՛կ,— հարցրեց նա:

Որդին անմիջապես չպատասխանեց: Մտածել շատ ավելի հեշտ էր, քան մտածածը արտահայտելը: Նա հորը նայեց ներքևից վերև: Նրա աչքերում կարծես խորամանկություն կար:

— Ես մտածել եմ,— սկսեց նա դանդաղ, բառերը ընտրելով և որոշակի արտասանելով, — ես որոշել եմ, որ դու այսօր Պատրիկը լինես, իսկ ես՝ հայրիկը:

— Այդ ինչպե՞ս,— Արամը զարմացավ:

— Ես հայրիկը կլինեմ ու աշխատանքից տուն կգամ:

Նա շարունակում էր դանդաղ խոսել, բառերը հատ-հատ արտասանել, աշխատում էր մտածածը չկորցնել.

—Իսկ դու Պատրիկը կլինես և ինձ հետ կխոսես, հարցեր կտաս:

—Ի՞նչ պետք է խոսեմ. ի՞նչ հարցեր պետք է տամ:

Ամբողջովին ուշադրություն դարձած, նա աշխատում էր հետևել որդու մտքերին:

— Ինչ ուզենաս: Կհարցնես ինչ ուզենաս, և ես պետք է պատասխանեմ:

— Իսկ ի՞նչ պետք է ուզենամ:

— Ամեն օր դու աշխատանքից տուն ես գալիս և ես քեզ հարցնում եմ ինչ ուզում եմ: Մինչև քո գալը ամեն օր ես մտածում եմ, երբ գալիս ես, իմ մտածածները ասում եմ քեզ:

Արամը ուշադիր նայեց որդուն: Նա հասկացավ, որ Պատրիկի ուղեղում հարցեր են ծագել, որոնց պատասխաններն է փնտրում: Նա ուզեց իմանալ այդ հարցերը և նրանց պատասխանները, բայց զգաց, որ հեշտ չէր չորս տարեկան երեխայի հարցերն իմանալ: Արամը գիտակցում էր, որ որդու համար շատ կարևոր մի խնդրի առջև էր այժմ և պետք էր այն անպայման ճիշտ լուծել:

— Շատ լավ,— համաձայնեց նա, հուսալով, որ այդ տարօրինակ խաղի ընթացքում ինքը հնարավորություն կունենա հասկանալ որդու մտածումը: —Շատ լավ, սկսենք:

Պատրիկի աչքերը ուրախությունից փայլեցին:

— Հիմա ես դուրս կգամ,— ասաց նա,— ու երբ վերադառնամ, հայրիկ դարձած կլինեմ, աշխատանքից եկող հայրիկ:

— Իսկ ե՞ս,— հարցրեց Արամը:

— Դու էլ Պատրիկ դարձած կլինես և անկյունում նստած քո խաղալիքների հետ կխաղաս, սպասելով հայրիկի գալուն:

— Շատ լավ, հասկացա,— համաձայնեց Արամը:

Պատրիկը դուրս եկավ և մի քիչ անց վերադարձավ: Արամը նայեց նրա դեմքին, քայլվածքին, ամբողջ արտահայտությանը և շարժումներին, ու զարմանքը հազիվ զսպեց: Նրա մտավ մտահոգության և հոգնածության բոլոր ակնհայտ նշանները արտահայտող մի մարդ, որ քայլում էր հավանաբար ճիշտ իր նման: Առանց խոսելու և առանց ժպիտի, նա առաջացավ մինչև սենյակի կենտրոնը, ձեռքի ծանր պայուսակը դրեց սեղանին, հետո բաճկոնը հանեց, հագցրեց աթոռի թիկնակին ու նոր միայն իր կողմը դարձավ:

— Մայրիկը չի՞ եկել,— հարցրեց նա և, առանց պատասխանի սպասելու, ավելացրեց.— Դեռ շուտ է, եկած չի լինի:

Որդեն Պատրիկ դարձած Արամը մոտեցավ նրան:

— Հայրի՛կ,— ասաց նա,— մայրիկը դեռ չի եկել, իսկ տատիկը խոհանոցում ճաշ է պատրաստում:

— Իսկ դու ի՞նչ ես արել ամբողջ օրը, — հարցրեց հայրիկ դարձած Պատրիկը,— չարություն արե՞լ ես:

— Ո՛չ, հայրի՛կ,— պատասխանեց Արամ-Պատրիկը,— ճաշը կերել եմ: Միայն մի անգամ է տատիկը բարկացել վրաս, երբ



ուզում էի բակ գնալ:

— Մենակ բակ գնալ չի կարելի,— ասաց Պատրիկ-հայրիկը,— բակում չար երեխաներ կան: — Նա հավանաբար ճիշտ այնպես էր խոսում, ինչպես, ով գիտե, քանի անգամ խոսել էր ինքը՝ Արամը:

— Բայց բակում երեխաները խաղում են,— պնդեց նա:

— Դու տանը խաղա, այնքան խաղալիքներ ունե՜ս:

— Բակում վազում են, իսկ սենյակում վազել չի կարելի:

— Սենյակում վազել չի՛ կարելի: Գրքերիդ նկարների՛ն նայիր:

— Արդեն քանի անգամ նայել եմ: Նրանք ինձնից ձանձրացել են:

— Բակում էլ միշտ նույն տղաներն են:

— Նույն տղաներն են, բայց տարբեր խաղեր են խաղում:

Պարզվեց, որ նրանցից յուրաքանչյուրը իր դերը լավ գիտեր, և նրանք Պատրիկի հնարած այդ խաղը առաջ էին տանում մեծ ոգևորությամբ և եռանդով: Սակայն հանկարծ ինչ-որ բան սխալ եղավ:

— Հոգնած եմ,— ձանձրացած տեսք ընդունեց Պատրիկ-հայրիկը,— ես մի քիչ հանգստանամ,— ասաց նա:

— Հանգստացի՛ր,— պատասխանեց Արամ-Պատրիկը: ՛

— Ո՛չ, չեղավ,— բողոքեց Պատրիկ-հայրիկը,— այդպես չպետք է ասես:

— Հապա ինչպե՞ս,— հարցրեց Արամ-Պատրիկը:

— Չպետք է թողնես, որ հանգստանամ, պետք է մոտենաս և նոր բան ուզես, մի նոր հարց տաս:

— Ի՞նչ նոր բան:

— Օրինակ՝ պետք է մի նոր հեքիաթ պատմել տաս:

— Հա՛, ներողություն,— ասաց Արամ-Պատրիկը: Հիմա...

Նա մոտեցավ բազմոցին, որտեղ արդեն մեկնվել և աչքերը փակել էր Պատրիկ-հայրիկը:

— Հայրի՛կ,— խոսեց նա պահանջկոտ ձայնով,— հեքիա՛թ պատմիր:

— Շատ հոգնած եմ,— պատասխանեց Պատրիկ-հայրիկը, առանց աչքերը բացելու, բառերը հազիվ արտասանելով:

— Գի՛րք կարդա,— խնդրեց Արամ-Պատրիկը:

— Ամբողջ օրը կարդացել եմ, թող հանգստանամ:

— Մեն գալու գնանք,— ասաց Արամ-Պատրիկը:

— Արա՛մ-Պատրիկ, չե՞ս տեսնում, որ հայրիկը հոգնած է, նրան հանգստանալ է պետք: Նա գնացել է քեզ համար աշխատելու և հոգնած տուն է եկել:

Նա այնպես խիստ ձայնով խոսեց, որ Արամ-Պատրիկը վիրավորվեց, շատ վիրավորվեց: Ամբողջ օրը նա սպասել էր հորը, որպեսզի նա կատարեր երեկվա, առաջին օրվա, նախորդ բոլոր օրերի խոստումները:

— Դու երեկ խոստացար,— լացակումեց Արամ-Պատրիկը,— դու խոստացար ինձ Կարապի լիճը տանել, խոստացար պաղպաղակ գնել... Որքա՞ն բաներ ես խոստացել ու չես կատարում:

— Խոստացել եմ, ուրեմն կանեմ, կգնանք, պաղպաղակ կուտենք,— կարծես արդեն խնդրում էր Պատրիկ-հայրիկը,— բայց ոչ հենց հիմա, անմիջապես: Ա՛յ, շաբաթ օրը ազատ կլինեմ, կամ, ավելի լավ է, կիրակի օրը, մենք միասին կգնանք:

— Դու անցյալ անգամ էլ նույնն ասացիր, բայց կիրակին եկավ, դու մոռացար, և կիրակին գնաց:

Արամ-Պատրիկը դեռ շատ բան էր ուզում հիշեցնել, բայց խոսքի կեսին հուսահատ կանգ առավ: Պատրիկ-հայրիկը քնել էր: Նրա դեմքը, ամենայն լրջությամբ, շատ հոգնած մարդու արտահայտություն ուներ: Լուռ ու նստեց բազմոցի կողքին:

Քիչ հետո Պատրիկ-հայրիկը աչքերը բացեց:

— Քնել եմ, մայրիկը չի՞ եկել,— խոսեց նա:

— Մայրիկը չի եկել,— տխուր, շատ տխուր ասաց Արամ-Պատրիկը,— իսկ ես քո քնած ժամանակ բան եմ մտածել:

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

## ԱՇՆԱՆ ՀՐԱԺԵՇՏԻ ՀԱՆԴԵՍ

Զանգեզուրի գեղատեսիլ վայրերից մեկում է գտնվում Լեռնաձոր գյուղը: Գյուղի ութամյա դպրոցի համբավը դուրս է եկել մեր հանրապետության սահմաններից, հասել Մոսկվա ու Տաշքենդ, Լենինգրադ ու Քիշնև, անգամ հեռավոր Չուկոտկա, ուր նրանք գրքեր ու ընկույզ են ուղարկել իրենց հասակակիցների համար:

Երբ որոշվեց համամիութենական «Միշտ պատրաստ» երթը շարունակել, լեռնաձորցի պիոներները նոր եռանդով սկսեցին աշխատել: Անցյալ ուսումնական տարվա սկզբին նրանք արդեն մեկ տոննա թղթի մակուլատուրա էին հավաքել: Միայն ռադիոտողանի օրը Ռոբերտ Էջանանցու ղեկավարությամբ 250 կիլոգրամ մասուր հավաքեցին: «Պիոներկառույց» երթուղին նրանք ամբողջացրին նրանով, որ ստեղծեցին շինարարական բրիգադ: Գյուղում դպրոցի նոր շենք են կառուցում և դասերից հետո բրիգադի անդամները սիրով օգնում են շինարարներին:

Մի ուրբաթ օր, երբ բոլորը հավաքվեցին պիոներ-սենյակի մոտ, ընկեր Էջանանցին հայտարարեց.

— Երեխանե՛ր, ձեր քեկերները վստահել են ինձ հաղորդել ձեզ իրենց գաղտնիքը, կամ ավե-

— Ի՞նչ ես մտածել,— հարցրեց Պատրիկ-հայրիկը:

Արամ-Պատրիկը անմիջապես չպատասխանեց: Նա ոչ միայն պատասխանել չէր ուզում, այլ չէր ուզում այլևս խաղը շարունակել: Նա պարզապես դադարել էր Արամ-Պատրիկ լինելուց և հայրիկ էր դարձել: Նա հայացքով ստիպեց, որ Պատրիկ-հայրիկն էլ Պատրիկ դառնար: Այդպես էլ եղավ:

— Ես մտածել եմ,— խոսեց հայրիկը,— որ այլևս Պատրիկ չդառնամ: Ուզում եմ հայրիկ լինել:

— Ես էլ ուզում եմ Պատրիկ լինել,— ասաց որդին:

— Հիմա ես կպառկեմ և դու ասա, թե ինչ ես ուզում:

— Շա՛տ լավ, հայրի՛կ,— ասաց որդին:

Հայր ու տղա իրենց տեղերը և դերերը փոխեցին: Որդին մոտեցավ բազմոցի վրա մեկնված հորը:

— Հայրի՛կ,— ասաց նա,— դու այժմ հանգստացի՛ր, իսկ երբ մայրիկը գա ու մենք ճաշենք, միասին կգնանք ման գալու:

— Շա՛տ լավ, Պատրի՛կ:

— Գնանք Կարապի լիճը և պաղպաղակ ուտենք:

— Շա՛տ լավ, Պատրի՛կ:

— Հետո քայլենք փողոցով և դու քո ընկերներին ու ծանոթներին բարևի՛ր, կանգնի՛ր և հետները զրուցի՛ր:

— Շա՛տ լավ, Պատրի՛կ:

— Նրանց ասա՛, որ ես քո որդին եմ:

— Ինչու՞, Պատրի՛կ:

— Չգիտեմ: Երբ այդպես ես ասում ու երբ նրանք նայում են ինձ, շատ լավ է լինում:

— Ինչու՞, Պատրի՛կ:

— Չգիտեմ, հայրի՛կ: Կարծես մեծանում եմ:

Հայրիկը փակեց աչքերը: Պատրիկը անաղմուկ գնաց իր անկյունը ու մի պատկերազարդ գիրք բացելով՝ խորասուզվեց նկարների պատմած հրաշքների աշխարհը:

Քիչ հետո նա հանկարծ հայացքը բարձրացրեց և նայեց դռանը: Մայրը կանգնել էր այնտեղ ու ժպտում էր: Պատրիկը անակնկալի չեկավ և նույնպես ժպտաց: Նա կարծես զգացել էր մոր գալը:

— Մայրի՛կ,— ասաց նա,— հայրիկն ու ես խաղ խաղացինք:

— Ի՞նչ խաղ:

— Շատ լավ խաղ էր: Նա Պատրիկ դարձավ, ես՝ հայրիկ:

— Հետո՞:

— Հետո հայրիկը ասաց, որ այլևս Պատրիկ լինել չի ուզում:

— Ինչու՞:

— Որովհետև Պատրիկ լինելը դժվար է, հայրիկ լինելը՝ հեշտ:

— Դու այդպե՞ս ես կարծում:

— Այդպես է, մայրի՛կ: Պատրիկը հեքիաթ էր ուզում, իսկ հայրիկը ուզում էր քնել: Նա հեքիաթ չպատմեց և քնեց:

— Պատրի՛կ,— ասաց հայրիկը,— ավելի լավ է, որ դու Պատրիկ լինես, ես՝ հայրիկ, իսկ մայրիկը՝ մայրիկ: Ամեն մարդ լինի այն, ինչ ինքն է:

— Իսկ հիմա,— ասաց տատիկը, որ աննկատելի մտել էր սենյակ,— եկե՛ք ճաշասենյակ: Սեղանը պատրաստ է:

— Ուռա՜,— բղավեց Արամը բազմոցից վեր թռնելով:

— Ուռա՜,— նրան օրինակելով՝ բղավեց Պատրիկը:

Երկուսով վազեցին դեպի ճաշասենյակ, բայց դռան մոտ մայրիկը կանգնեցրեց նրանց և երթևեկությունը կարգավորող միլիցիոների շարժումով ցույց տվեց լվացարանը.

— Նախ լվացվե՛լ:

— Մայրիկը իրավացի է, Պատրի՛կ,— ասաց Արամը:

— Մայրիկը իրավացի է, հայրի՛կ,— ասաց Պատրիկը:

Եվ երկուսով, իրար հրելով, աշխատելով իրարից առաջ անցնել, խուժեցին լվացարան:

լի շուտ՝ մտահղացումը: Նրանք որոշել են կազմակերպել հանդես նվիրված աշնանը: Ովքեր ցանկանում են մասնակցել, թող աշնան վերաբերյալ երգեր, բանաստեղծություններ սովորեն և մինչև կիրակի մասնակցեն երգի-պարի խմբակի պարապմունքներին:

Եվ ահա մի առավոտ, երբ արևը հազիվ հասցրել էր տաքացնել լեռ ու ձոր, Լեռնաձորից դուրս եկավ պիոներական ջոկատը: Մինչև Բիշոր հանդամասի անտառը նրանք գնում էին կատակելով ու ծիծաղելով: Սակայն իսկական հանդեսը անտառում սկսվեց: Աշնանը նվիրված գրական երաժշտական համարներով, երգերով ու արտասանություններով հանդես եկան բոլորը: Նախորդ տարվա շրջանավարտներ Ջուլիետան, Վիգենը ու Արտյուշը, որ մասնակցում են նրանց գրեթե բոլոր միջոցառումներին, կարդացին աշնան վերաբերյալ հետաքրքիր ասույթներ, քաղած տարբեր տեղերից:

— Ընկերնե՛ր, բնության գըրկում, այս հաստաբուն ծառերով շրջապատված բացատում աշնան հրաժեշտի մեր հանդեսը հետաքրքիր էր: Եկեք այն դարձնենք ավանդական, կրկնենք ամեն աշնան և ավանդաբար կատարենք նաև մի օգտակար գործ՝ մաքրենք անտառը չորացած փայտերից,— ասաց Նրջանիկը:

— Իսկ ես առաջարկում եմ մասուր հավաքել:

Անուշի առաջարկությունն էլ ընդունվեց, սակայն մի փոքր վիճեցին, թե որի՞ն առաջնություն տալ: Վեճը ավարտվեց նրանով, որ ջոկատը երկու մասի բաժանվեց. մի խումբը սկսեց մասուր հավաքել, մյուսը՝ անտառը չոր փայտերից մաքրել:

Արևի ճառագայթների վերջին շողերը վաղուց անհետացել էին բարձր լեռան կատարից, երբ նրանք գյուղ իջան, անտառում թողնելով փայտի մեծ-մեծ կույտեր, իսկ իրենց հետ մոտ յոթանասուն կիլոգրամ մասուր բերեցին:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

# ՏԻԿՆԻԿՆԵՐԸ

ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Կիրակի օրը երեք ներկայացում տրվեց: Ուժասպառ դերասանները խռպոտել էին, դահլիճի լամպերը շիկացել, ճտճտում էին, իսկ հանդիսականներն այնքան էին աղմկել, ծափահարել, որ թեև արդեն հեռացել էին, բայց թվում էր, դեռ դահլիճում էին:

— Ես ձեզանից գոհ եմ,— դերասաններին գովեց դիրեկտորը,— ձեզանից էլ,— նա աչքով արեց տիկնիկներին, որ անշարժ պառկած էին բեմահարթակին և կարծես նույնքան հոգնած էին, որքան դերասանները: Թատրոնի դիրեկտորը ցանկացավ էլի հաճոյախոսել, բայց հարմար բառեր չգտնելով, վճռեց կրկնել ամիսներ առաջ լրագրում տպագրված հայտնի թատերագետի խոսքերը:

— Ձեր շնորհիվ, սիրելինե՛րս,— ասաց նա,— ես տեսա, թե ինչպես կենդանացան անշարժ տիկնիկները: Նրանք տիկնիկ են միայն առաջին պահերին և մեկ էլ ներկայացումից հետո, ա՛յ, հիմա երբ պառկած են բեմահարթակին: Իսկ ներկայացման ընթացքում նրանք ամենաիսկական մարդուկներ են, նապաստակ, առյուծ, շուն և այլն: Եվ ես չեմ զարմանա, բոլորովին չեմ զարմանա, եթե մի օր հանկարծ այս տիկնիկները բեմ ելնեն առանց ձեր օգնության:

Սկզբում Աղվես-տիկնիկի պոչը շարժվեց, հետո Շունը գլուխը բարձրացրեց, սաստեց Աղվեսին: Դերասանները քնած էին կամ քնում էին և նրանց մատներին կապված չէին տիկնիկներին գործի գցող լարերը:

«Սա ի՞նչ բան է,— ապշեց դիրեկտորը,— թե՞ աչքիս երևաց:— Նա կսմթեց իր ազդրը, կեղծ հազաց:— Հոգնել եմ,— եզրակացրեց,— ամիսն ավարտվի, գնամ հանգստանալու»:

Աղվեսի պոչը քարացավ կրկին, Շունը դունչն իջեցրեց առջևի թաթերին ու փակեց աչքերը:

— Տիկնիկները մեզ թալանում են,— ասես քնի մեջ, ասես երազում խոսեց Աղվեսի դերակատարը,— մենք նրանց տալիս ենք մեր ամեն ինչը՝ սերը, եռանդը, մտքերը...

— Մտքե՞րը,— հարցրեց դիրեկտորը:

— Այո՛, մտքերը:

— Իսկ... իսկ պատահե՞լ է,— ձայնն իջեցրեց դիրեկտորը,— որ Աղվեսն, ասենք, շարժի պոչը...

Դերասանուհին բաց արեց աչքերը, խորամանկ ժպտաց.

— Աղվեսը հենց նրա համար է, որ շարժի պոչը, դիրեկտո՛ր:

— Առանց քո օգնությա՞ն:



— Ի՞նչ կա զարմանալու: Չէ՞ որ ինքներդ ասացիք. «Ես չեմ զարմանա, բոլորովին չեմ զարմանա, եթե մի օր հանկարծ այս տիկնիկները բեմ ելնեն առանց մեր օգնության»:

«Դրանք իմ խոսքերը չեն»,— ուզեց ճչալ դիրեկտորը, բայց լռեց, որովհետև իրեն հանկարծ թվաց, թե ինքը մի տիկնիկ է, որին գործի գցող լարերը հայտնի թատերագետի մատներին են կապված:

— Իսկ հիմա՝ ցրվե՛լ,— շփոթմունքը ծածկելու համար բղավեց դիրեկտորը, սա թատրոն է և ոչ թե հյուրանոց:

Հոգնած դերասանները դժկամությամբ վեր ելան բազկաթոռներից, առանց մեկմեկու հրաժեշտ տալու, ասես, դեռ քնի մեջ, դուրս եկան թատրոնից:

Հրաշալի երեկո էր: Մոտակա շատրվանների շունչըն էր զգացվում և հոտավետ, հաճելի պաղություն էր փչում դիմացի տաղավարը, ուր պաղպաղակ էին վաճառում: Դիրեկտորը պաղպաղակ չէր սիրում ու չէր էլ հիշում, թե վերջին անգամ երբ էր կերել, բայց այսօր շոգը, հոգնածությունը նրան այնպիսի վիճակի էին հասցրել, որ պաղպաղակը փրկություն թվաց:

— Երեք հարյուր հիսուն գրամ,— պատվիրեց նա մատուցողին,— միայն թե սառը լինի:

— Պաղպաղակը միայն սառն է լինում, դիրեկտո՛ր:— Մատուցողը չէր ասողը: Դիրեկտորը շրջվեց ձայնի կողմը և հարևան սեղանի մոտ տեսավ հայտնի թատերագետի ծանոթ մորուքը ու կարճատեսի ակնոցը, որի ապակիների մեջ արտացոլվում էին թատրոնի



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

մարող-վառվող նեոնե լույսերը:

— Լավ է, որ հանդիպեցինք,— հուզված դիրեկտորը փոխեց տեղը, նստեց թատերագետի կողքին,— պաղպաղակ կուտենք, կզրուցենք… Շոգ է, չէ՞:

— Շոգ է,— հորանջեց թատերագետը,— բայց ավելի լավ է շոգը, քան ցուրտը: Շոգի դեմ միջոց կա՝ ստվերը, ջուրը, պաղպաղակը: Իսկ ցրտի դե՞մ:

— Վառարանը,— գլուխ արածի նման վրա բերեց դիրեկտորը,— թեյը, մուշտակը, ձեռնոցները, ականջակալներով գլխարկը, բրդյա գուլպաները… Իմ կարծիքով ամեն ինչի դեմ էլ միջոց կա…

Հենց այդ պահին նրա լեզուն կապ ընկավ, որովհետև այն, ինչ նա տեսավ թատերագետի ակնոցի ապակիների մեջ, աներևակայելի, անհավատալի տեսարան էր: Չգիտես ում մեղքով թատրոնի լուսամուտներից մեկը բաց էր մնացել, և ահա այդ բաց լուսամուտից դուրս էին նայում տիկնիկների գլուխները:

— Հիվա՞նդ ես, դիրեկտո՛ր:

— Չէ՛, չէ՛… Ես ուզում էի հարցնել, իմանալ… Դու իսկապե՞ս չես զարմանա, եթե մեր տիկնիկները մի օր բեմ ելնեն առանց դերասանների օգնության, կամ, ասենք… նստեն լուսամուտի գոգին…

— Չէ՛, չե՛մ զարմանա,— հանգիստ ասաց թատերագետը ու կուլ տվեց ընկույզով պաղպաղակի վարդագույն գունդը:— Ես զարմանում եմ, որ նրանք ուշացնում են… Նրանց այդ քայլին ես վաղուց եմ սպասում:

— Հապա նայիր թատրոնի՛ն,— շշնջաց դիրեկտորը:

Թատերագետը ակնոցի տակ կկոցեց աչքերը, բայց, իհարկե, նեոնե մարող-վառվող լույսերից բացի ոչինչ չտեսավ:

— Բաց լուսամուտի՛ն նայիր…

— Ակնոցս հինգ տարի առաջ եմ պատվիրել, դիրեկտո՛ր, իսկ հինգ տարվա մեջ աչքերս էլի են տկարացել:

— Նո՛րը պատվիրիր,— խորհուրդ տվեց դիրեկտորը և գրպանից հանեց բանալիների մի խուրձ:— Վերցրո՛ւ ու թատրո՛ն մտիր… Առանց ինձ, խնդրում եմ… Ես քեզ կսպասեմ այստեղ… Կարծեմ, եկել է սպասածդ օրը… Նրանք շարժվում են…

— Ովքե՞ր են շարժվում,— թատերագետը լրջորեն անհանգստացավ դիրեկտորի համար, ափով ստուգեց նրա ճակատի ջերմությունը,— երեք հարյուր հիսուն գրամ պաղպաղակը շատ չէ՞, սիրելի՛ս:

— Գուցե և շատ է, բայց ես դեռ առողջ եմ, միայն թե, գրողը տանի, նրանք շարժվում են… Ա՛յ, հիմա ես տեսնում եմ նրանց գլուխները…

Թատերագետը մոտ կանչեց մատուցողին, վճարեց իր և հուզված դիրեկտորի պաղպաղակի արժեքը և ասաց.

— Ձեր աչքերը լա՞վ են տեսնում:

— Չեմ բողոքում,— ժպտաց մատուցողը:— Մի անգամ ստուգել եմ: Տախտակի ամենավերջին շարքի



ամենամանր տառերն էլ կարդացի: Միայն «ա»-ն ու «ս»-ն շփոթեցի:

— Հիմա, խնդրում եմ, նայեք թատրոնի բաց լուսամուտի՛ն. տեսնո՞ւմ եք տարօրինակ որևէ բան:

Մատուցողը պատրաստակամ շրջվեց, նայեց թատրոնի ուղղությամբ:

— Տարօրինակ ոչինչ չեմ տեսնում:

— Լսեցի՞ք, սիրելի՛ս,— ասաց թատերագետը դիրեկտորին,— նա, որ կարդացել է ստուգման տախտակի ամենավերջին՝ ամենամանր տառերը, տարօրինակ ոչինչ չի տեսնում:

— Տիկնիկներին չե՞ք տեսնում,— համարյա լաց եղավ դիրեկտորը:

— Տեսնում եմ,— ասաց մատուցողը,— նրանք ամեն երեկո էլ նստում են լուսամուտի գոգին ու փողոց են նայում: Այդտեղ ի՞նչ տարօրինակ բան կա:

— Լսեցի՞ր,— ճչաց դիրեկտորը:

— Դուք մեզ ձե՞ռ եք առնում,— զայրացավ թատերագետը:

— Եթե չեք հավատում,— նեղացավ մատուցողը,— մեկ ուրիշի՛ն հարցրեք: Բայց ինչո՞ւ չեք հավատում... Ես մի լրագրում կարդացել եմ, թե բոլորովին էլ հեռու չէ այն օրը, երբ տիկնիկները բեմ կելնեն առանց դերասանների օգնության:

— Հեղինակն էլ ինքն է,— քրքջաց դիրեկտորը,— ի՛նքն է, որ կա:

— Էլ ինչո՞ւ չեք հավատում,— զարմացավ մատուցողը,— գրում եք ու չեք հավատում:

— Գնանք,— վճռական ոտքի ելավ թատերագետը, դիրեկտորի ձեռքից խլեց բանալիների խուրձը,— բայց հիմարություն է, չէ՞: Սա նույն բանն է, ինչ, ասենք, այս տաղավարը սկսի քայլել,— նրանք համարյա վազքով անցան փողոցը,— ինչ, ասենք, հեռագրասյուները սկսեն նկարել, կովերը ձու ածեն, գետերը վեր հոսեն...

— Ոչ մի կով դեռ ձու չի ածել,— շնչահեղձ լինելով ասաց դիրեկտորը,— իսկ տիկնիկներն, ահա, շարժվում են:

Նրանք կանգ առան թատրոնի դռան առջև ու շունչ քաշեցին:

— Զգո՛ւյշ,— ասաց դիրեկտորը,— այնպես մտնենք, որ մեզ չլսեն:

— Չլսեն,— հեգնեց թատերագետը,— հիմա ես հասկանում եմ, թե ինչու ես դու ավելի կողմնակից ցրտին: Շոգը հյուծել է քեզ, սիրելի՛ս...

Այնուամենայնիվ թատերագետը զգուշորեն բացեց դուռը և դիրեկտորի նման առաջացավ ոտնաթաթերի վրա: Նախասրահում և ճեմասրահում լռություն էր, ու թատերագետը ներքուստ տոնում էր հաղթանակը: Նրանք քայլում էին ուղեգորգերի վրայով, և միայն հատակի հնացած տախտակներն էին ճռռոցով երբեմըն խախտում լռությունը:

Նրանք կիսաբաց արեցին դահլիճի դուռը և քարացան:

Բեմահարթակում իրարանցում էր, աղմուկ: Խոսում էին բոլոր տիկնիկները միասին և այդ պատճառով չէր լսվում և ոչ մեկի խոսքը: Բաց պատուհանի տակ դրված էր հրշեջի երկար սանդուղքը, իսկ պատուհանի գոգին ժամապահների նման կանգնած էին զինվորական համազգեստով տիկնիկները:

Ապշած, սարսափած թատերագետը գտավ դիրեկտորի ձեռքը ու ամուր սեղմեց: Հանկարծ տիկնիկները սսկվեցին: Ոտքի ելավ Մարդուկը: Նա ամենախելոք տիկնիկն էր: Նրան չէին պատրաստել հատուկ որևէ դերի համար: Փոխելով զգեստը, դիմագծերը՝ Մարդուկին հարմարեցնում էին հարյուրավոր դերերի, և բնականաբար նա ավելին գիտեր, քան նրանք, ովքեր մեկ կամ երկու դեր էին կատարել:

— Ես կփորձեմ,— ասաց Մարդուկը,— պատասխանել բոլոր նրանց, ովքեր դեմ են փախուստի առաջարկությանը:

Թատերագետը և դիրեկտորը վախեցած իրար նայեցին:

— Ի՞նչ են ասում առարկողները,— շարունակեց Մարդուկը:— Նրանք ասում են՝ մենք չենք ուզում անշնորհակալ լինել: Նրանք ասում են՝ մենք մեծ գործ ենք կատարում թատրոնում՝ երեխաներին ու նրանց ծնողներին ցույց տալով, թե ինչպես պետք է գեղեցիկ ապրել: Եվ վերջապես նրանք ասում են, թե մենք այլ գործի ընդունակ չենք, այսինքն՝ ի՞նչ պիտի անենք թատրոնի պատերից դուրս: Տիկնիկնե՛ր,— ձայնը

բարձրացրեց Մարդուկը,— հավատացե՛ք, մենք դրսում ավելի ենք պետք, քան թատրոնում: Թատրոն հաճախում են ոչ բոլորը և ոչ բոլորն են թատրոնը լրջորեն ընդունում: Մենք ավելի շնորհակալ գործ կկատարենք դրսում: Մեր ընդունակությունները և կարողությունները մենք սահմանափակում ենք թատրոնում. մենք անում ենք այն, ինչ նախատեսել են հեղինակները: Իսկ կյանքը, հավատացեք, լայն, շատ լայն սահմաններ ունի, եթե, իհարկե, կան այդ սահմանները...

Մարդուկը, հավանաբար, էլի պիտի խոսեր, բայց տիկնիկներից շատերը ծափահարեցին և նա գլխի ընկավ, որ ելույթն ավարտելու ամենահարմար պահն է:

— Լուսամուտն էլ բաց են թողել,— հիշեց Շունը,— ամենահարմար օրն է:

— Մի խոսքով, տիկնիկնե՛ր,— ամփոփեց Մարդուկը,— ով ուզում է՝ թող մնա: Բայց իմացե՛ք, ես խղճալու եմ մնացողներին:

Ոչ ոք չէր ուզում, որ Մարդուկը խղճար իրեն, և բոլորը հերթով ու անաղմուկ բարձրացան սանդուղքով, տեղավորվեցին լուսամուտի գոգին:

— Ի՞նչ անենք, դիրեկտո՛ր,— ատամներն իրար զարկելով շշնջաց թատերագետը:

Դիրեկտորը թոթվեց ուսերը.

— Թույլ տանք, որ գնա՞ն...

— Քիչ էր մնացել,— լսվեց Շան ձայնը,— որ Աղվեսը խափաներ փախուստը:

— Ես ցանկացա,— ծիծաղեց Աղվեսը,— ստուգել միայն. խսկապե՞ս չի զարմանա դիրեկտորը, եթե պոչս շարժվի: Ոչ միայն զարմացավ, այլև վախեցավ: Վախից էր, որ չհավատաց աչքերին:

— Ճշմարիտ է,— շշնջաց դիրեկտորը,— վախեցա, սարսափեցի... Դո՛ւ էլ, դո՛ւ էլ ես սարսափում, հարգելի՛ թատերագետ, աչքերիցդ եմ զգում: Սփրթնել ես, ատամներդ իրար են զարկվում... Բայց ինչո՞ւ, ինչո՞ւ ենք սարսափում:

— Թա... թա... թատրոնը կը կործանվի,— հագիվ արտասանեց թատերագետը, և նրա դեմքը կըծկըվեց, կարմրեց: Դիրեկտորը գլխի ընկավ, որ թատերագետը մտադիր է բղավել: Նա թեև անաղմուկ, բայց կտրուկ փակեց դահլիճի դուռը, գրկեց թատերագետի մարմինը, դուրս բերեց փողոց:

— Ծպտուն չհանես:

— Գժվե՞լ ես, դիրեկտո՛ր:

Դիրեկտորի դեմքին ինքնագոհ ժպիտ էր փայլում: Նա հիմա նման էր այն ռեժիսյորին, որ նոր բեմադրություն է ներկայացրել և սպասում է հանդիսատեսի դրվատանքին:

— Տիկնիկները փախչում են,— համարյա ճչաց թատերագետը:

Իրոք, տիկնիկները թատրոնի բաց լուսամուտից ցած էին ցատկում ու սկզբում խումբ-խումբ, հետո ցրվելով՝ առանձին-առանձին տկտկացնում էին մայթերը և անհետանում փողոցի մթության մեջ ու աղոտ լուսավորված շքամուտքերում:

— Թող գնան,— ավելի լայն ժպտալով ասաց դիրեկտորը,— չխանգարենք նրանց: Թող գնան ու տեսնեն, թե ինչ կարող են անել նրանք թատրոնի պատերից դուրս... Հետո մենք մեր թատրոնի բեմում կներկայացնենք նրանց իրենց այդ նոր դերերի մեջ:

— Ցնորվե՞լ ես, դիրեկտո՛ր,— փնթփնթաց թատերագետը, բայց նրան, աստիճանաբար համակում էր դիրեկտորի մտահղացումը:

Տիկնիկների ոտնաձայները գնալով հեռանում էին...

**Խմբագրության կողմից** — Առաջարկում ենք մեր ընթերցողներին գրել այս պատմվածքի շարունակությունը՝ «Տիկնիկների արկածները թատրոնի պատերից դուրս»: Առավել հետաքրքիրները կտպագրվեն:

## ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆԻ ՀԵՏ

ԴԱՌՆԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ

1935 թ. հունիսի կեսերին ավարտեցի «Արմատական բառարանի» 7-րդ լրացուցիչ հատորի շարվածքը: Ամեն օր նույն ժամին Աճառյանին էի տանում սրբագրությունները, վերցնում նախորդ օրվա շարելիքը: Մի օր ասաց, թե հաջորդ օրը տալու է վերջաբանը և վրիպակները, դրանով վերջանալու էր մեր գործը:

Այնքան էինք սովորել միմյանց, որ ինձ համար շատ դըժվար պիտի լիներ կտրվել այդ մթնոլորտից:

Հաջորդ օրը երբ մտա նրա սենյակը, զբաղված էր, գրում էր:

— Հիմա կավարտեմ,—ասաց, — վերջին էջն եմ գրում:

Նստեցի ու սպասեցի: Ավարտեց: Ուրախ ոտի կանգնեց և ասաց.

— Ուղիղ քառասուն տարի առաջ, Պոլսի Կենտրոնական վարժարանի նստարանների վրա ըսկըսված մի գործ է, որ ավարտեցի այս ժամին: Վերջաբանի տակին գրել եմ 1935, հունիսի 27: Ինձ համար անմոռանալի օր է այս: Լավ է, քո անունն էլ կապվեց այս բառարանի հետ, քո մասին էլ եմ գրել այստեղ:

Պետերբուրգում սովորություն կար՝ գրաշարների անունները գրում էին կարևոր գրքերի վերջին էջերում: Իմ անունը գրել էին Լենինի երկերի 13-րդ հատորի, Մարքսի «Կապիտալի» առաջին հատորի և այլ գրքերի վերջում: Բայց դա հեղինակների գործը չէր, տպարանի տեխնիկական խմբագրությունն էր գրում:

Աճառյանն այդ օրը արտակարգ ուրախության մեջ էր, անընդհատ սրախոսում էր, կատակում, միայն ափսոսանք հայտնեց, որ վրիպակներ կան: Հետո էլ ասաց.— Ոչինչ, անգամ Մխիթարյանների հրատարակություններում սխալներ են լինում:

Եկա տպարան: Սկսեցի կար-

---

Սկիզբը՝ № 1, 2, 8-ում:

# ՌԵԿԼԱՄ ԵՎ ԱՌԱՋԸՆԹԱՑ

Պատմությունը ցույց է տվել, որ որևէ գյուտ կամ մտահղացում՝ դեռևս գործի կեսն է: Գործի երկրորդ կեսը այդ գյուտի ներդրումն է տեխնիկայի մեջ, մարդկանց ուղեղում, որոնք նորը ընկալում են ոչ այնքան հեշտ և արագ: Անցյալ դարերում գիտության և տեխնիկայի շատ գործիչներ իրենց մտահղացումները ռեկլամելու համար հաճախ հանդես են բերել ոչ պակաս հնարամտություն, քան իրենց հոգեզավակի մշակման և ստեղծման ժամանակ:

## ԳԱՂՏՆԻ, ԲԱՅՑ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՏՆԻ

Անգլիացի բժիշկ Ջոն Բայրոմը 1720 թվականին հորինեց սղագրման մի նոր, յուրօրինակ սիստեմ և սովորեցրեց բոլոր ցանկացողներին: Սկզբում ցանկացողների թիվը քիչ էր: Բայց բժշկի առաջադեմ հաշվարկին օգնության եկավ բանաստեղծի բուռն երևակայությունը: Նա սկսեց հրատարակել ռեկլամի չափածո թերթիկներ: Բայրոմը կազմակերպում էր սղագրողների մրցում և ոչ այլուր, քան սրճարաններում, ժողովրդի աչքի առաջ: Նա ստեղծեց սղագրողների ակումբ, որի



նիստերը «գաղտնի» էր հրավիրում: Բայրոմը ոչ առանց հիմքի գտնում էր, որ մարդկանց հետաքրքրասիրության շնորհիվ ուշադրությունը ակումբի և արագ գրառման նկատմամբ ապահովված է:

## «ԴՐՈՇՄԱՆԻՇԵՐԻ ՏԵՍՈՒՉԸ»

20-ամյա Բեսսեմերը պատրաստեց մի քանի կեղծ դրոշմանիշեր՝ անգլիական առևտրական փաստաթղթերի ձևակերպման համար, և այդ դրոշմանիշերը տարավ գերատեսչության դիրեկտորի մոտ: Դիրեկտորը չկարողացավ կեղծ դրոշմանիշերը տարբերել իսկականից: Գյուտարարը անմիջապես նրան առաջարկեց օգտագործել հատուկ մի կնիք, որը ծակոտկեն պատկերի միջոցով հայտնաբերում էր կեղծիքը: Փոխարենը Բեսսեմերը բավական բարձրաստիճան պաշտոն ստացավ՝ դարձավ գերատեսչության «դրոշմանիշերի տեսուչը»:

Այս պատմությունն ավարտվեց շատ անակնկալ: Հաջողությունից ոգևորված գյուտարարի հարսնացուն հորինեց մի նոր, ավելի պարզ կնիք՝ ամենօրյա փոփոխվող ներդիրով: Դրանց օգտագործումը այնքան հեշտացրեց կեղծ դրոշմանիշերի հայտնաբերումը, որ Բեսսեմերի պաշտոնը դարձավ



դալ վերջաբանը: Այնտեղ համառոտ պատմվում էր «Արմատական բառարանի» քառասուն տարվա տառապալից կյանքը, ճշմարիտ մի ոդիսական, լի միմյանց հաջորդող ուրախ և տխուր դրվագներով: Քանի՜-քանի անգամ մոտեցել է տպագրության հնարավորությունը, բայց միշտ մի չար ձեռք խանգարել է, մինչև որ սովետական պայմաններում վերջապես իրագործվել է մեծ լեզվաբանի տարիների երազը և գիրքը հրատարակվել է ապակետիպով: Ապա բերվում էր ականավոր հայագետներ Մեյեի, Մառի և այլոց հիացական կարծիքները բառարանի մասին, և վերջում հեղինակը շնորհակալություն էր հայտնում Հայաստանի կառավարությանը, պետական համալսարանի ղեկավարությանը, ապակետիպի վրա աշխատող բանվորներին, որից հետո խոսվում էր իմ մասին, ասվում, թե գրքի հավելվածային այդ հատորը ամբողջապես շարել եմ ես. ամեն գովասանքից վեր էր համարում իմ եռանդը և աշխատանքային հմտությունը, չէր մոռացել նաև նշել, որ ես երզնկացի եմ:

Պետք է երևակայել պատանեկան իմ հպարտությունը, որ այսպիսի կոթողային մի գրքի վերջում դրոշմվում էր իմ գրաշարիս, համեստ անունը, ինքնասիրությունս շոյող դրվատանքներով:

Հաջորդ օրը երբ սրբագրությունները տվեցի նրան, հարցրի, թե կարիք կա՞ր երզնկացի լինելս հիշատակել:

— Այո՛,— ասաց նա,— երզընկացիները աշխատասեր, համեստ մարդիկ են, ես էլ եմ երզընկացի:

— Ինչպե՞ս, դուք պոլսեցի եք: Իսկ ձեր ծնողներն էլ ռոդոստոցի են:

— Այո՛, բայց Ռոդոստոյի հայերը 16-րդ դարում գաղթել են Երզնկայից. այդ մասին կան վավերական վկայություններ, այնպես որ մեր նախահայրերը կարող են...

— Հարազատնե՞ր լինել,— ասացի ծիծաղելով:

այլևս անիմաստ: Եվ քանի որ ոչ փեսացուն և ոչ հարսնացուն չէին ենթադրել, թե կարիք կլինի գյուտարարական պատենտի իրենց իրավունքը պաշտպանել, չնայած բազմաթիվ խնդրանքներին, հատուցում չստացան:



## ՆՈՐ ՏԱՐՎԱ ԳԻՇԵՐԸ

Էդիսոնը Նոր տարին՝ 1880 թվականը դիմավորեց յուրօրինակ հրավառությամբ: Հարյուրավոր էլեկտրական լամպերից արձակված լույսը, որ լուսավորում էր արհեստանոցն ու նրա շրջակայքը, ուրախացնում էր գյուտարարին: Նրան պակաս հաճույք չէին պատճառում նաև այն երեք հազար հյուրերը, որոնք հիացած նայում էին հնդկեղեգի խանձված թելի միջուկով ապակե սրվակներին: Ոչ, նա իզուր չէր հրավիրել նրանց և նույնիսկ հատուկ գնացք՝ պատվիրել՝ միայն թե գային: Նա գիտեր, որ դրանից հետո էլեկտրական նոր լամպի փառքը թևառած կսավառնի ամենուր:

## ԲԵՏՈՆԻ ԱՍՊԵՏՆԵՐԸ

Լոնդոնցի իրավաբան Հեյետը անդադար պնդում էր, որ շենքերի երկաթբետոնե շինարարությունը ունի մի շարք առավելություններ: Վերջապես նա հասկացավ, որ գործին քիչ ծանոթ մարդկանց համար ավելի կարևոր է մեկ անգամ տեսնել, քան հարյուր անգամ լսել: Նա գնեց մի հողակտոր և այնտեղ շենք կառուցեց: Երբ շենքը պատրաստ էր, նորաբնակների փոխարեն եկան հրշեջներ և բազմաթիվ հանդիսատեսներ: Նրանց աչքի առաջ իրավաբանը շենքի մեջ հսկայական խարույկ վառեց: Բոլորը սպասում էին, որ ահա ուր որ է պատերը կփլվեն, կսկսվի հրդեհ: Բայց փայտերն այրվեցին և կրակի լեզուներն անհետացան, իսկ շենքը մնաց կանգուն: Այսպես լոնդոնցիները ակներև դաս ստացան բետոնի հրա-




կայունության մասին: Որոշ ժամանակ անց նման դեպք կրկնվեց նաև Բուդապեշտում: Պոլիտեխնիկական ինստիտուտի պրոֆեսոր Զելինսկու նախաձեռնությամբ այստեղ որոշեցին կառուցել ջրմուղի երկաթբետոնե աշտարակ: Բայց տեղական իշխանությունները կասկածում էին, թե աշտարակը ամուր կստացվի: Պրոֆեսորը նրանց հավաստիացրեց, որ երբ ջրամբարը կսկսեն լցնել, նա կկանգնի աշտարակի տակ: Երբ ջրամբարը սկսեց լցվել, ջուրը հանկարծ ժայթքեց ներքև, ուղիղ պրոֆեսորի վրա, որը հանդիսավոր օրվա առթիվ հագել էր նոր կոս-

— Հնարավոր է:

Նույն թվի օգոստոս ամսին Անառյանի գրասեղանին դրի «Արմատական բառարանի» 7-րդ հատորը: Նա վերցրեց գիրքը, թերթեց և ուրախացավ այնպես, ինչպես պիտի ուրախանար իր մանկիկին գրկող ծնողը: Դա Հայաստանում նրա առաջին գիրքն էր, որ լույս էր տեսնում տպարանական շարվածքով: Մինչ այդ նրա աշխատությունները հրատարակվել էին ապակետիպով:

— Կարծո՞ւմ ես, որ պիտի կարողանանք ամբողջը տպագրել:

— Անշուշտ,—ասացի վստահ,—այժմ ունենք անհրաժեշտ տառերի մեծ մասը, ես էլ բավականաչափ փորձ եմ ձեռք բերել:

— Ապակետիպն էլ լավ է. անսխալ է լինում, ինչպես գրում եմ, այնպես բազմացվում է: Միայն ժամանակ շատ խլեց: 9000 էջ արտագրելու փոխարեն մի գիրք կավարտեի:

Հաջորդ օրվանից այլևս առիթ պիտի չունենայի նրա տանը լինելու, թեև այնքան էի սովորել, որ չէի էլ պատկերացնում, թե պիտի անցնեմ նրա դռնով և պիտի չմտնեմ ինձ ծանոթ բակը:

Դռան մոտ էի, որ հանկարծ հարցրեց.

— Ո՞ր կուրսում ես հիմա:

— Լեզվագրական ֆակուլտետի 3-րդ կուրսում,—պատասխանեցի, առանց հասկանալու հարցի իմաստը:

— Ուրեմն մենք կրկին պիտի գործ ունենանք իրար հետ: Սեպտեմբերից ձեզ մոտ պիտի կարդամ հայոց լեզվի պատմություն:

Ուրախությունս չափ չուներ. նախ այն պատճառով, որ դարձյալ պիտի հանդիպեի նրան, և երկրորդ, որքա՜ն էի ուզում լսել նրա դասախոսությունները: Հաջորդ օրվանից մեր համակուրսեցիներից հանդիպողին հաղորդում էի ուրախ լուրը, վստահ, որ նույնքան էլ նրանց համար էր հաճելի Աճառյանին աշակերտելը:

*(Շարունակելի)*









*տյում: Սառը ցնցուղը չվախեցրեց Զելինսկուն, ընդհակառակը նա գովասանական ճառ ասաց նոր շինանյութի օգտին: Եվ նա իրավացի էր. տեղնուտեղը պարզվեց, որ ջուրը հոսում էր աշտարակի ինչ-որ աննշան թերավարտ մասից: Բայց երկաթբետոնի հասցեին ասված ներբողը, որ արտասանվեց այդքան անսովոր պայմաններում, պրոֆեսորի հայրենակիցների վրա մեծ տպավորություն թողեց և շատ օգնեց նոր շինանյութի լայն ներդրմանն ու արմատավորմանը:*

*Մ. ՇՊԱԳԻՆ*

# ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ ՕԼԻՄՊԻԱԴԱՆ



Հաճախ կարելի է լսել, որ այս կամ այն մարզաձևում մարդը սպառել է իր հնարավորությունները և որ ավելի բարձր արդյունքներ չի կարելի սպասել: Սակայն ավելի իրավացի են այն մասնագետները, որոնք մարդկային օրգանիզմի հնարավորությունները համարում են անսպառ: Այդ է ապացուցում կյանքը: Օրինակ, այն համաշխարհային ռեկորդները, որոնք դեռևս մի քանի տասնամյակ առաջ ֆանտաստիկ էին թվում, այժմ դարձել են սովորական:

Համոզված կարելի է ասել, որ այսօրվա համաշխարհային ռեկորդները նույնպես վերջնական չեն: Եվ հաջողությունը կուղեկցի այն մարզիկներին, որոնք ձգտում են մշտական կատարելագործման, չեն վախենում ամենօրյա ու լարված մարզումներից: Չէ՞ որ վերջին հաշվով բնության մեջ նույնն են անում նաև կենդանիները, նրանց ողջ ապրելակերպը մշտական մարզում է, ճարպկություն և ուժի որակների դաստիարակություն: Համեմատենք այսօրվա լավագույն մարզիկների արդյունքները կենդանական աշխարհի ներկայացուցիչների արդյունքների հետ: Այդ յուրօրինակ օլիմպիադայում մարդը դեռևս հեռու է մրցանակային տեղեր գրավելուց, բայց հենց դա էլ վկայում է, որ մարդկային օրգանիզմը դեռևս շատ չբացահայտված հնարավորություններ ունի:

**Բարձրացատկ.**— Ամենագեղեցիկ ու հանդիսավոր թռիչքը կատարում է մարսուինը կամ ծովային խոզուկը (կետազգի կաթնասուն է, նման է դելֆինին)— 6—6, 1 մ: Նրան հաջորդում են հյուսիսամերիկյան պուման՝ 4—4, 5 մ, **սոմոնը** (սալմոնիդների ընտանիքին պատկանող գիշատիչ ձուկ)— 3,65 մ, մոխրագույն կենգուրուն՝ 3,20 մ, և նորապա մարդը՝ 2,30 մ (Ստոունսի վերջերս սահմանած համաշխարհային ռեկորդը):

**Ազատ ոճի լող.**— Ջրերի բացարձակ չեմպիոնն է արևադարձային թյունոսը (գիշատիչ ձուկ՝ 2—4 մ երկարությամբ), որի արագությունն է 80 կմ/ժամ: Նա ետ է թողնում դելֆինին՝ 58,1 կմ/ժամ և նույնիսկ կետ ձկանը՝ 58 կմ/ժամ:

Մեծ մրցակցություն կա 3-րդ տեղի համար. պինգվինը՝ 37 կմ/ժամ, ծովային կրիան՝ 35,4 կմ/ ժամ, սոմոնը՝ 32,2 կմ/ժամ: Մարդը վերջին տեղն է գրավում՝ Մարկ Սպիտցի ռեկորդով՝ 7 կմ/ժամ:

**Վազք.**— Բացարձակ չեմպիոնն է իմպալան (հարավարևելյան Աֆրիկայում ապրող խոտակեր կաթնասուն՝ այծեղջյուրի ընտանիքից)՝ ավելի քան 80 կմ ժամ:

Նրանից ետ են մնում վայրի ավանակը՝ ավելի քան 56 կմ/ժամ, կոյոտը՝ 48 կմ/ժամ, հյուսիսային եղջերուն՝ 48 կմ/ժամ և դրոմադերը՝ 40,2 կմ/ժամ:

Միջին տարածությունների ամենաարագ վազորդը՝ ամերիկացի Ջիմ Ռայանը 1500 մ վազքում հազիվ հասնում է 25 կմ/ժամի:

**Մարաթոնը** դիմացկունության փորձություն է: Առաջնության համար այստեղ պայքար է գնում սև այծյամի՝ 57 կմ/ժամ և մոնղոլական այծյամի՝ մինչև 56,3 կմ/ժամ: «Բրոնզի մեդալի» է արժանանում հյուսիսային եղջերուն՝ 40 կմ/ժամ: Պատվո տեղերի մրցակիցներն են. ձին՝ ավելի քան 27 կմ/ժամ և վերջապես մարդը՝ եթովպացի Աբեբե Բիքիլայի ռեկորդով՝ ավելի քան 19 կմ/ժամ:

**Ցատկ երկարությո՛ւն.**— Բացարձակ չեմպիոնն է կարմիր կենգուրուն, որի թռիչքը (12,6—12,8 մ) ավելին է եռացատկի մի հաջողակ սկսնակի արդյունքից: Նրա ցուցանիշի արդյունքին մոտ է իմպալա անտիլոպի արդյունքը՝ 12,2 մ:

Այնուհետև, երրորդ տեղի համար պայքարում են գեպարդը՝ 9,15 մ, մարդը՝ Բոբ Բիմոնի ռեկորդով՝ 8,9 մ, և աֆրիկյան ջուդը, որն իր չափսերի համեմատ ընդունակ է բավականին երկար թռիչքներ գործելու՝ 3,9—3,95 մ:



*Ռուսերենից թարգմ. Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆԻ*

# ԿՈՊԵՌՆԻԿՈՍԻ ԵՎ ԽԱՐՑԵՐՆԵՐԻ ՔԱՂԱՔԸ




Զարմանալի ճակատագիր է ունեցել լեհական Ֆրոմբորկ քաղաքը: Նա մեծ չէ, հիմնադրվել է 13-րդ դարում: Տարեգրության մեջ պահպանվել են նրա պատմության բոլոր էջերը: Դրանցից ամենակարևորն ու քաղաքին պատմական դարձնողը 1520 թվականն է, երբ քաղաքի փողոցներով առաջին անգամ քայլել է հռչակավոր աստղագետ Նիկոլայ Կոպեռնիկոսը:

Այս տարի լրացավ մեծ գիտնականի ծննդյան 500-ամյակը: Այդ կարևոր հոբելյանին լեհ պատանի խարցերները (պիոներները) նախապատրաստվում են 1967 թվականից սկսած: Այդ տարի Լեհաստանը թևակոխեց իր գոյության երկրորդ հազարամյակը: Խարցերների միությունը հայտարարեց «Ֆրոմբորկ—1001» օպերացիան, որը վերաբերում էր Կոպեռնիկոսի քաղաքի՝ Ֆրոմբորկի վերակառուցմանն ու բարեկարգմանը. Հինգ-վեց տարվա ընթացքում պատանիներն ու աղջիկները քաղաքում ,դպրոց, փոստ, մանկապարտեզ կառուցեցին, այգիներ, պարտեզներ ու պուրակներ հիմնեցին, բարեկարգեցին փողոցները ու լողափը: Իրենց աշխատած բոլոր վայրերում խարցերները թողել են գրություններ. «Վերականգնված (կամ կառուցված) է 1967—68 թվականներին՝ խարցերների կողմից, որոնք «Ֆրոմբորկ—1001» օպերացիայի ժամանակ աշխատել են 5918 աշխատաժամ»:

Ինչպես Սովետական Միությունում «Զուկոտկա» օպերացիան, այնպես էլ «Ֆրոմբորկ—1001»-ը երկար ժամանակ է պահանջել և ամենամեծ նախաձեռնությունն է խարցերների պատմության մեջ: Օպերացիայի պատանի հիմնադիրները մեծացել, այժմ ինժեներներ, տեխնիկներ ու բանվորներ են դարձել: Նրանց փոխարինելու են եկել նորերը:

Լեհական խարցերների միության 4-րդ համագումարի դիմումի մեջ կան այսպիսի խոսքեր. «Թող «Ֆրոմբորկ—1001» օպերացիային մասնակցելը պատվի գործ դառնա յուրաքանչյուր խարցերի համար և նվիրվածության խորհրդանիշ՝ սոցիալիստական հայրենիքի նկատմամբ»:

Խարցերները հենց առաջին օրվանից ոգևորությամբ գործի անցան: Սակայն տեղի բնակիչները թերահավատությամբ էին վերաբերվում նրանց աշխատանքին, վարսավիրներից մեկը վեճի բռնվելով նրանց հետ, ասաց. «Եթե դուք որևէ բանի հասնեք, ես կսափրեմ իմ գլուխը»:

Օպերացիայի վերջում վարսավիրին տեսան գլուխը սափրած: Նա շնորհակալություն հայտնեց խարցերներին մեծ գիտնականի քաղաքը բարեկարգելու, վերակառուցելու համար:

Օպերացիայի լրիվ իրականացմանը մեծ չափով նպաստել են շինարարական ուսումնարանների խարցերները, կատարելով մասնագիտական իմացություն պահանջող շատ գործեր: Ամեն տարի ամառային արձակուրդներին Ֆրոմբորկում ստեղծվել է վրանների քաղաք, որտեղ ապրել են շուրջ հինգ հազար խարցերներ: Շտաբը հետևել ու կազմակերպել է նրանց աշխատանքն ու հանգիստը:

Առաջադրանքը կատարելու ընթացքում դժվարություններ շատ են եղել: Օպերացիայի սկզբում քաղաքի արտաքին տեսքը շատ անհրապույր էր: Խարցերները զրուցել են բնակիչների հետ, խնդրել, որ կարգի բերեն իրենց բակերը: Չի օգնել: Գլխավոր շտաբում երկար խորհրդակցել են, վիճել, բայց հարմար ելք չեն գտել: Հետո մեկն առաջարկել է մրցություն հայտարարել լավագույն բակի համար: Մեկ ամիս անց, քաղաքի արտաքին տեսքը լրիվ փոխվել է և բոլոր բակերը հիանալի տեսք են ստացել. ցանկալի չի եղել ետ մնալ հարևաններից:

«Ֆրոմբորկ—1001» օպերացիայի մասնակիցները միայն շինարարությամբ չէին բավարարվում: Հանգստի ժամերին նրանք տեղի բնակչության համար աստղագիտության, բարեկամության, Կոպեռնիկոսի կյանքի ու գործունեության վերաբերյալ զեկուցումներ են կարդացել, համերգներով ու թատերական ներկայացումներով հանդես եկել: Իրենց այցելած հյուրերին ուղեկցել են քաղաքի պատմական վայրերը, Կոպեռնիկոսի թանգարանն ու այն դիտակետը, որտեղից մեծ գիտնականը հետևել է տիեզերքում կատարվող զարմանալի շարժումներին. Իսկ եթե պիոներներ են եղել հյուրերը՝ նաև բարեկամության խարույկներ են կազմակերպել:

Շինարարությունը ավարտելուց, քաղաքը բարեկարգելուց հետո, նրանք ստեղծել են թանգարան՝ «Կոպեռնիկոսից մինչև տիեզերանավ» անունով: Այստեղ կան տիեզերքի ուսումնասիրության և աստղագիտության մեջ կիրառված բազմաթիվ սարքավորումների ու հարմարանքների նմուշներ:

«Ֆրոմբորկ—1001» օպերացիան շատ բան սովորեցրեց խարցերներին: Եվ նրանք որոշեցին այն օգտագործել Վարշավայի մոտ կառուցվող մանկական բուժկենտրոնի շինարարությունում, որը նվիրված է ֆաշիզմի դեմ մղված պատերազմում զոհված երեխաների հիշատակին:

Ս. ՖՈՐԻՆ



# ԲՈՒՅՍԵՐ, ՈՐՈՆՔ ԿԱՆԽԱԳՈՒՇԱԿՈՒՄ ԵՆ ԺԱՄԱՆԱԿՆ ՈՒ ԵՂԱՆԱԿԸ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*կենսաբանական գիտությունների դոկտոր*

Ովքեր լավ են ճանաչում հայրենի բնությունը, նրանց համար բավականին հեշտ է բուսականության միջոցով որոշել տեղանքի բարձրությունը ծովի մակերևույթից, թեքությունների բնույթը, դրանց դիրքը աշխարհի կողմերի նկատմամբ, հողերի կազմը, խոնավությամբ հագեցվածությունը և նույնիսկ առանձին բույսերի վարքը դիտելով՝ գուշակել... ընպասվելիք եղանակը կամ օրվա ժամանակը:

Մեր հանրապետության ամեն մի դպրոցական կարող է եղանակը գուշակել, եթե ծանոթ է սովորական աստղիկ կոչվող բույսին (լատիներեն կոչվում է ստելլարիա մեդիա, ռուսերեն՝ մոկրիցիա): Այն հանդիպում է ամենուրեք և հատկապես հաճախ Երևանի շրջակայքում՝ բակերում, Հրազդանի կիրճում, Սևանում, դաշտերում և բանջարանոցներում, աղբոտ, ստվերոտ վայրերում:

Սա չափազանց կարճ ապրող, գիտական լեզվով ասած՝ էֆեմեր բույս է. ապրում է ընդամենը 3—4 շաբաթ: Սակայն աստղիկի սերմերը ընկնելով խոնավ հողի մեջ, առաջացնում են նոր բույսեր, որոնք իրար հերթափոխելով կարող են գոյատևել ամբողջ սեզոնի ընթացքում՝ վաղ գարնանից մինչև ուշ աշուն: Բացի դրանից, աստղիկի սողացող, փխրուն ճյուղերը հպվելով խոնավ գետնին, արմատակալում են և մայրական արմատից անջատվելով՝ նոր բույսեր են առաջացնում: Չափազանց կենսունակ բույս է. նույնիսկ մասերի բաժանված աստղիկի առանձին կտորները ընդունակ են նոր բույսեր դառնալու:

Տերևները ձվաձև են, 1—2 սմ երկարությամբ, ցողունի վերին մասում գտնվողները՝ կոթունավոր են, ներքինները՝ անկոթուն: Ծաղիկները, որոնք տեղադրված են երկար ծաղկակոթունների վրա, մանր են, սպիտակ: Ծաղկում է վաղ գարնանից մինչև ուշ աշուն:

Սովորաբար անձրևից հետո աստղիկը դառնում է «բյուրեղապակյա»: Նրա ցողունները ծածկված են մանր մազմզուկներով, որոնք պահում են անձրևի կաթիլները, և արևի տակ փայլփլելով, այն տպավորությունն են թողնում, որ կարծես բույսը ամբողջովին բյուրեղապակուց է:

Աստղիկով կարելի է եղանակը գուշակել: Եթե մինչև առավոտյան ժամը 9-ը նրա ծաղիկը խոնարհված վիճակում է և ծաղկաթերթիկները լրիվ չեն բացվում, ապա կարելի է վստահ ասել, որ ցերեկվա ընթացքում անպայման անձրև կգա:

Եթե վաղ առավոտվանից աստղիկի ծաղիկները զվարթ կերպով դեպի երկինք են նայում ու լրիվ բացված են, ապա սպասվում է պարզ եղանակ և երկինքը որքան էլ որ պատած լինի ծանր ու գորշ ամպերով, կարող ենք պլանավորել հեռավոր արշավներ, բացօթյա խաղեր, առանց վախենալու քիչ թե շատ հորդ անձրևներից:

Այս հատկության շնորհիվ աստղիկը բնասերների մոտ հայտնի է նաև որպես «բուսական բարոմետր»: Այդ հրաշալի բարոմետրը, որը մեր հանրապետությունում հանդիպում է ամեն քայլափոխում, միշտ էլ կարող է ձեզ ծառայել, քանի որ, ինչպես ասացինք, կյանքի կարճատև ցիկլ ունենալու շնորհիվ անընդհատ նոր բույսեր են առաջանում, որոնք ծաղկում են վաղ գարնանից մինչև ուշ աշուն: Կարևորն այն է, որ յուրաքանչյուր դպրոցական լավ ճանաչի այդ բույսը, կենսաբանության դասատուի օգնությամբ հավաքի հերբարիում և անհրաժեշտության դեպքում օգտվի դրանից, կարողանա տարբերել մյուս բույսերից:

Երկրագնդի վրա եղանակ գու-

շակող նման բույսերի թիվը չափազանց մեծ է: Մարդը իր երկարատև գոյության ընթացքում դրանցից շատերին հայտնաբերել և հաջողությամբ օգտագործում է իր առօրյա կյանքում: Մեր հնագույն գիտնականները ու մատենագիրները՝ Գրիգոր Մագիստրոսը, Ագաթանգեղոսը, Մխիթար Հերացին, Ամիրդովլաթ Ամասիացին, Մխիթար Գոշը, Դավիթ Սալաձորեցին և ուրիշներ իրենց ստեղծագործություններում բազմաթիվ գեղեցիկ ու տպավորիչ օրինակներ են բերում: Հայ շինականը շատ դեպքերում դիտելով այս կամ այն բույսի վարքը, ճշտորեն որոշում էր գյուղատնտեսական աշխատանքների ամենահարմար և նըպատակայալաց ժամկետները:

Այսպես, օրինակ, հնուց ի վեր նա գիտեր, որ խաղողի հյութաշարժը սկսվելու պահին արդեն ժամանակն է սկսելու լոբու, սիսեռի, բակլայի ու ոսպի ցանքը: Երբ սկսում էին ուռչել խնձորենու բողբոջները, դա արդեն ահազանգ էր այն մասին, որ բամբակի ցանքի ամենահարմար ժամկետն է հասել: Հիմա մեր կոլխոզնիկները գիտեն, որ երբ վերականգնվում է խոտածածկը և կանաչում է աշնանացանը, ապա անհրաժեշտ է անմիջապես սկսել եգիպտացորենի ցանքը և ծխախոտի սածիլումը: Ծիրանենու բողբոջների ուռչելը գյուղատնտեսներին տեղեկացնում է, որ ժամանակն է սկսել կարտոֆիլի պալարների տնկումը:

Ամերիկյան յուրաքանչյուր ֆերմեր շատ լավ գիտի, որ եթե թխկու տերևները ոլորվում են և գով քամու կողմն են դարձնում տերևի ներքին մակերեսը, ապա անպայման անձրև է գալու: Անտառի ամեն մի բնակիչ կարող է հաստատել, որ ընկուզենու ծառի բնի քարաքոսի շերտի հաստությամբ կարելի է որոշել՝ խստաշունչ կլինի առաջիկա ձմեռը թե ոչ: Շաքարային թխկի մշակող ամերիկացի ֆերմերը միայն մի հայացք գցելով իր ծառերի վրա, կարող է որոշել, թե տվյալ պահին տարվա որ ամիսն է: Նույնքանը կարող է անել սոճու խեժ մթերող մասնագետը, դիտելով սոճու ծառերի ընդհանուր վիճակը:

Արևմտյան Աֆրիկայում ծառերը հաճախ ծառայում են որպես ժամացույց, նույնիսկ՝ որպես հուսալի զարթուցիչներ: Իրվինը բերում է այդպիսի ծառերի չորս օրինակ:

Գրիֆֆոնիան ունի հինգ սանտիմետրանոց փքուն հունդեր, որոնք պայթում են «խլացուցիչ ճայթյունով», Անկրայի հարթավայրի ֆերմերին տեղեկացնելով այն մասին, որ ժամանակն է ըսկսել գյուղատնտեսական կուլտուրաների ցանքը:

Քլատոբսիլոնը ծառ է մինչև 18 մ բարձրությամբ: Սրա պըտուղները որպես կանոն հասունանում են ճիշտ և ճիշտ Նոր տարվա օրը:

Լիբերիական բարդու (միթրագինա ցիլիաթա) վրա երիտասարդ կարմիր տերևների հայտընվելը համարվում է ձկնորսական սեզոնի սկսվելու սկիզբը:

Տրիխիլիան ծաղկում է փետրվարին և օգոստոսին: Այդ բույսի ծաղկումը անսխալ կերպով ցույց է տալիս եգիպտացորենի երկրորդ ցանքի սկիզբը անձրևային երկրորդ սեզոնի ըսկըսվելուց առաջ:

Սակայն եղանակի ու ժամանակի այս բոլոր ցուցիչ-բույսերի վարքը միանգամայն խամրում է կիսաթփային որմիայի՝ մալայական այդ մշտադալար բույսի զարմանալի «ընդունակությունների» առջև:

Այս բույսը օժտված է բացառիկ կենսունակությամբ: Սկսում է ծաղկել 3—4 տարեկան հասակից և կանոնավոր կերպով ծաղկում է իր ողջ կյանքի ընթացքում, որը սովորաբար տևում է 50—100 տարի:

Որմիայի ծաղկաբողբոջները սովորաբար բացվում են մեկական, մեկը մյուսի ետևից, աստիճանաբար, ծաղկափթթության հիմքից դեպի գագաթը: Ծաղիկների ամեն մի հերթական բացման միջև եղած ընդհատումը կարող է տևել 2—6 օր: Ծաղկաբողբոջը սկսում է ուռչել ուղղակի մարդու աչքի առջև, իսկ բացվելու նախօրյակին, գագաթը դառնում է դեղնավուն: Մյուս օրը գիշերվա ժամը 3-ին ծաղկաթերթիկները առանձնանում են և ծաղիկը ընդունում է զանգակի ձև: Արևը ծագելուց մեկ ժամ առաջ այն արդեն լրիվ բացվում է: Ցերեկվա ժամը 4-ին ծաղկաթերթիկները թափվում են և հենց նույն գիշերն էլ բաժակաթերթիկները խառնում են սերմնաբողբոջի վրա, չնայած դրանք վերջնականապես փակվում են հաջորդ օրվա երեկոյան:

Պտուղները հասունանում են ճիշտ հինգ շաբաթում: Պսակաթերթիկների թափվելու 36-րդ օրը, գիշերվա ժամը 3-ին պտուղը բացվում է, և արևածագից դեռևս շատ առաջ պտղի վարդագույն աստղիկը (որը կազմված է եզրերը վարդագույն ու ըսպիտակ 7—8 ճառագայթներից) լրիվ կերպով բացվում է, շողշողալով իր ողջ գեղեցկությամբ:

Եվ ծաղիկները, որպես կանոն, սկսում են բացվել գիշերվա ժամը 3-ին, այսինքն ճիշտ այն պահին, երբ օդի խոնավությունը այնքան բարձր է, որ սկսում է ցող դնել, իսկ գիշերային խավարը առավել թանձր է: Դա բույսի համար առավելագույն հանգստի շրջանն է:

Քանի որ, ինչպես ասացինք, որմիայի մեկ բույսը 3—4 տարեկան հասակից մինչև իր կյանքի վերջը անընդհատ ծաղկում ու պտղաբերում է, ապա նրա վրա եղած ծաղիկների ու պտուղների վիճակից, բավականին մեծ ճշգրտությամբ կարելի է կռահել օրվա ժամանակը: Ինչ վերաբերվում է բնության այս երևույթի գիտական բացատրությանը, ապա այդ ուղղությամբ լուրջ ուսումնասիրություններ դեռևս չեն կատարված:




ՆՈՐ ԳԻՐՔ ՁԵԶ ՀԱՄԱՐ

# «ԲԱՐԵ՛Վ, ՍԿՅՈՒՌԻ՛Կ, ԻՆՉՊԵ՞Ս ԵՍ, ԿՈԿՈՐԴԻԼՈ՛Ս»

Կարդալով Յուրի Դմիտրևի «Բարև՛, սկյուռի՛կ, ինչպե՞ս ես, կոկորդիլո՛ս» գրքի խորագիրը, դուք անպայման կմտածեք՝ սա կա՛մ հեքիաթ է, կա՛մ մանկական պատմվածք: Թե չէ էլ որտե՞ղ են կենդանիները խոսում: Այսպես մտածողները, իհարկե, կսխալվեն: Այս գիրքը գրված է միանգամայն իրական, նույնիսկ գիտական ճշգրիտ փաստերի հիման վրա: Եվ որքան էլ զարմանալի թվա, այո՛, կենդանիները խոսում են, խոսում են տարբեր լեզուներով, խոսում են ձայնով, խոսում են անձայն՝ շարժումների լեզվով, խոսում են նշանների լեզվով, հոտերի լեզվով:

Որսորդը քայլում է անտառով, հանկարծ նա կանգ է առնում և նայելով ծառի վրայի խոր քերծվածքին, որ մարդու հասակից էլ բարձր է, ասում է.

— Օհո՜, այստեղ արջը նամակ է թողել: Նա գրել է՝ այս տեղը զբաղված է, բոլոր արջերի մուտքն այստեղ արգելվում է: Այլապես վատ կլինի: Տեսնո՞ւմ եք, ես ինչքան մեծ եմ:

— Իրոք որ մեծ է,— նայելով նշանին, ասում է որսորդի ընկերը:

— Մեծ է, իհարկե, բայց ոչ այնքան, որ իրենից վախենան, խորամանկել է բրդոտը: Ամբողջ ուժով ձգվել է, որպեսզի, որքան հնարավոր է բարձրում հետք թողնի և սարսափեցնի իր ցեղակիցներին: Այդպես են արջերը, իրար խաբում են...

— Իսկ արջերն ինչի՞ց են իմանում, որ նշանը թողել է իրենց ցեղակիցը:

— Նայեցեք ծառաբնի վրա թողնված մազերի՛ն: Արջը ոչ միայն իր մազերն է թողել որպես նշան, այլև՝ հոտը: Նա մեջքը կամ գլուխը քսում է ծառին և այդպիսով հոտը թողնում ծառաբնին:

Ինչպես տեսնում եք, արջը խոսեց նշանների և հոտերի լեզվով: Դուք գիտեք, իհարկե, որ կենդանիների

## Ճանաչի՛ր և հավաքի՛ր դեղաբույսերը

## ՄՂԱՄՈՒԺ

Գնդաձև ճյուղավորված թփի տեսք ունի, տրամագիծը հասնում է 20-100 սմ: Կանաչ պարազիտ է, ապրում է տարբեր ծառատեսակների վրա, հատկապես՝ սաղարթավորների, և սնվում դրանց՝ հաշվին:

Ընկնելով ծառերի բարձր ճյուղերի վրա՝ մղամուճը իր արմատներով թափանցում է դրանց կեղևի տակ և ապա բնափայտի մեջ վարգացնում բազմաթիվ ծծիչներ: Այդ ծծիչներով նա իր տեր-ծառից վերցնում է ջուր և դրա մեջ լուծված հանքային նյութեր և իր տերևներում կատարում ասիմիլյացիա, որի համար էլ նրան դասում են կիսապարազիտների շարքը:

Պ[illegible]ղը հյութալի, կեղծ հատապտուղ է, միասերմ:

Թռչունները, հատկապես՝ կեռնեխը, հաճույքով ուտում են մղամուճի պտուղները և ապա սերմից ազատվելու, կտուցը մաքրելու համար քսում են ծառի ճյուղերին: Սերմերը այդ ճանապարհով էլ տարածվում են, ամրանում ծառերի ճյուղերին և ապա ծլում: Պտուղները հասունանում են ուշ աշնանը ու մնում բույսի վրա ամբողջ ձմեռը:

Մղամուճը որպես դեղաբույս բժշկությանը հայտնի է հին ժամանակներից: Ժողովրդական բժշկության մեջ փոշու և բուսաջրի ձևով օգտագործվում է ջղային հիվանդությունների և ընկնավորության դեպքում, ինչպես նաև՝ թարախակալումների ժամանակ: Ներկայումս մղամուճից ստացված բազմաթիվ պրեպարատները լայն կիրառություն ունեն բժշկության մեջ որպես պարկերակային ճնշումը իջեցնող, սրտի գործունեությունը ուժեղացնող, անոթներ լայնացնող միջոցներ և այլն:

Օգտագործվում են մղամուճի երիտասարդ ճյուղերն ու տերևները, որոնք պետք է հավաքել ուշ աշնանը կամ ձմռանը: Տարածված է Իջևանի, Ալավերդու, Ղափանի և մի քանի այլ շրջանների անտառներում:

Վ. Ե. ՌՍԿԱՆՅԱՆ

Կենսաբանական գիտությունների թեկնածու



հոտառությունը խիստ զարգացած է, և նրանք կարող են կողմնորոշվել հոտերի լեզվով: Իսկ կարո՞ղ եք պատկերացնել, որ թիթեռնիկը նույնպես խոսում է հոտերի լեզվով: Ահա ծնվել է էգ թիթեռնիկը, նա իր գոյության մասին արուներին հայտնում է հոտով, արտադրում է մի կաթիլ բուրավետ հեղուկ: Եվ այդ բավական է, որպեսզի նրա ցեղակիցները տասնմեկ կիլոմետր հեռավորության վրա զգան նրա գոյությունը և թռչեն գան նրա մոտ:

Գիտնականները բազմաթիվ փորձեր են արել և պարզել կենդանիների, թռչունների, ձկների հաղորդակցման շատ հետաքրքիր փաստեր:

Հետախույզ մեղուն առատ բերք է գտել և բեռնավորված թռել հասել իր փեթակը: Նա պետք է ընկերներին հաղորդի և՛ բերքի առատության ու որակի մասին, և՛ հեռավորության ու ուղղության մասին: Եվ հայտնում է, ու ընկերներն էլ հասկանում են նրան:

Մրջյունը որս է գտել մրջնանոցից հեռու: Նա զիգզագաձև վազելով հասնում է մրջնանոց և իր հետ բերում ճիշտ այնքան մրջյուններ, որքան պետք է տվյալ բեռը տեղափոխելու համար: Ինչպե՞ս է կարողանում հայտնել որսի մեծության մասին:

Կարմրատուտ թռչունի արուն մարիից շուտ է չվում, գալիս և հարմար փչակ է գտնում, բույն շինում և սպասում ընկերուհուն: Հիմա ի՞նչ անի: Եթե գնա ընկերուհի փնտրելու, ուրիշ թռչուն կզավթի բույնը: Նա էլ գտել է ելքը: Նշից դրոշակի պես դուրս է ցցում իր վառ կարմիր պոչը և սպասում: Մարին շատ լավ է հասկանում, թե դա ինչ է նշանակում, և սպասեցնել չի տալիս: Շատ հետաքրքիր է և մի ուրիշ փաստ՝ Լոնդոնում ապրող սարյակները չեն հասկանում Մոսկվայում ապրող սարյակների լեզուն: Սև արագիլները չեն հասկանում ճերմակ արագիլների լեզուն: Կենդանիներից շատերն էլ հաճախ դիմում են նվերների լեզվին: Ճայերի մի տեսակը ընկերուհի փնտրելիս ձուկ է որսում և նվերն առած գնում զբոսանքի: Քայլում է ափով և դիտում նստած թռչուններին ու ընտրելով մեկին, ձուկը մեկնում է նրան: Պատահում է, վերջինս չի ընդունում նվերը, արուն վերցնում է ձուկը և շարունակում ճանապարհը: Նրան չեն շփոթեցնում և՛ երկրորդ, և՛ երրորդ, չորրորդ մերժումները, ի վերջո մեկնումեկը կընդունի: Ձուկնվերը նրանք չեն ուտում, դա ծառայում է նրանց իբրև խոսելու միջոց: Ձկան ծայրերից բռնած՝ նրանք երկար նստում են կողք-կողքի: Շատ հետաքրքիր է կենդանիների աշխարհը և բազմաթիվ հետաքրքիր փաստերի կհանդիպեք դուք Յուրի Դմիտրևի «Բարև՛, սկյուռի՛կ, ինչպե՞ս ես, կոկորդիլո՛ս» գրքում: Գուցե և դա առիթ կտա, որ ինքներդ զբաղվեք կենդանիների լեզվի ուսումնասիրությամբ: Իսկ այդ մի ասպարեզ է, ուր դեռ շատ ու շատ գաղտնիքներ կան:

ԱՄԱԼՅԱ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Լույս է տեսնում 1923 թվականից:



ՊԻՈՆԵՐ

№ 10 հոկտեմբեր 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

*նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-16, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 09200: Պատվեր՝ 1065: Տպաքանակ՝ 79900: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 1/X 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 Կ.                                                    ԻՆԴԵՔՍ՝ 77806




# ԲԱՌԱՇՂԹԱ

## (ՏԱՌԵՐԸ՝ ՔԻՉ, ԲԱՌԵՐԸ՝ ՇԱՏ)

Այս բառաշղթայի բառերը գրվում են ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ։ Ա, Բ, Գ, Դ տառերը վանդակները բաժանում են չորս մասի։ Բառերի սկիզբը ամեն մի հարցի առաջին թիվն է, վերջը՝ վերջին թիվը։

—Ա—

1—5. —գերմանացի նշանավոր բանաստեղծ։
2—4. —թիվ։
4—8. —սպորտային խաղ։
5—10. —գետ՝ Սիբիրում։
8—13. —Շիրվանզադեի «Նամուս» դրամայի հերոս։
12—15. —Հովհ. Թումանյանի պոեմներից։
14—19. —ռուս մեծ ծովակալ։
17—19. —ընտանի կենդանի։
17—22. —լեռնաշղթա՝ ՍՍՀՄ-ի հարավում։
21—24. —աշխարհամաս։

—Բ—

1—6. —անգլիացի նշանավոր ֆիզիկոս, աստղագետ և մաթեմատիկոս։
4—8. —կշռի միավոր։
7—11. —Հովհ. Թումանյանի հեքիաթի հայտնի հերոս։
8—14. —հայ աշխարհահռչակ մարմնամարզիկ։
9—14. —սովետահայ անվանի գրող։
13—15. —պատմական քաղաք՝ Հին Հայաստանում։
16—17. —գետ՝ Ղազախստանում։
16—22. —պետություն՝ Ասիայում։
18—22. —արևադարձային բույս։
21—24. —մետաղ։

—Գ—

1—4. —Եղիշե Չարենցի պոեմներից։
3—8. —սովետական մանկագիր։
4—8. —հայ թագավոր։
8—12. —կղզի, որտեղ ապրել է Մ. Գորկին։
9—13. —տարվա ամիս։
13—16. —գետ՝ ՍՍՀՄ-ում։
15—20. —Նորվեգացի նշանավոր ճանապարհորդ։
18—21. —գետ՝ Ֆրանսիայում։
20—24. —շախմատի ֆիգուր։

—Դ—

1—5. —քաղաքացիական պատերազմի լեգենդար հերոս։
2—5. —թիվ։
5—10. —պետություն՝ հյուսիսարևելյան Աֆրիկայում։
7—10. —պետություն՝ արևմտյան Աֆրիկայում։
8—10. —Եղիշե Չարենցի հայտնի պոեմի հերոս։
8—13. —սովետական հայտնի բանաստեղծուհի, «Զոյա» պոեմի հեղինակը։
11—16. —ռուս մեծ գրող, հեղափոխական։
14—20. —կշռի միավոր։
18—22. —լեհացի սովետական բանաստեղծուհի։
22—24. —նոտա։

Կազմեց ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ